Պրոլետարներ բոլոր յերկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ ԿՈՒՍ. ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ, ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԵՎ ՄԱՄՈՒԼԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 9 (40)

ՀԿ(բ)Կ ԿԿ հրատարակչություն—«Խորհրդ. Հայաստան»
ՅԵՐԵՎԱՆ—1938

ՀԿ (բ) Կ Կենտկոմի կուլտ· պրոպագանդայի
յեվ ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 9 (40)

ՀԿ (բ) ԿԿԿ հրատարակչություն—«Խ. Հայաստան»
ՅԵՐԵՎԱՆ—1938

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---


Պատ. խմբագիր՝ Բ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ
Քարտուղար՝ ՀՐ. ՄԱՐԳԱՐՅԱՆ
Սրբագրիչներ՝ Ա. ՑԵՐԻՑՅԱՆ և ԱՆԴ. ԲԱԼԱԲԱՆՅԱՆ
Գլավլիտի լիազոր՝ ՑԵ.—6603
Ստորագրված է տպագրության 22 ապրիլի, 1938 թ.
Պատվեր № 310: Տիրաժ 9480
«ԽՈՐՀ. ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏ. ՏՊԱՐԱՆ
ՅԵՐԵՎԱՆ


# ՄԱՅԻՍԻ ՄԵԿԸ-ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՊՐՈԼԵՏԱՐԱԿԱՆ ՀԱՄԵՐԱՇԽՈՒԹՅԱՆ ՕՐ

## (ՆՅՈՒԹԵՐ ԶԵԿՈՒՅՑՈՒՄՆԵՐԻ ՅԵՎ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ)

1938 թվի մայիսի մեկին միջազգային պրոլետարիատը տոնում է իր 49-րդ մայիսմեկյան: Մայիսի մեկը — միջազգային պրոլետարական համերաշխության օրը — կապիտալիստական յերկրների բանվոր դասակարգի համար հանդիսանում է պրոլետարիատի մարտական ուժերի ստուգատեսի օր, պրոլետարական զումարտակները կապիտալի վրա գրոհի համար, ֆաշիզմի վրա գրոհի համար մոբիլիզացիայի յենթարկելու օր: Մայիսի մեկը ԽՍՀՄ աշխատավորների համար հանդիսանում է հաղթանակած սո-

ցիալիզմի տան, մեր հաղթանակների ու նվաճումների ստուգատեսի որ, խորհրդային ժողովրդի ուժերը կոմունիզմի հետագա հաղթանակների համար պայքարելու շուրջը մոբիլիզացիայի յենթարկելու որ:

Մայիսի մեկի որը միջազգային պրոլետարիատը, ամբողջ առաջավոր ու առաջադեմ մարդկությունը նորից իրենց հայացքները ուղղեն դեպի սոցիալիզմի յերկիրը, դեպի ԽՍՀՄ-ը, — վորը բոլոր աշխատավորների հույսն ու նեցուկն է խաղաղության, դեմոկրատիայի, ազատության ու սոցիալիզմի համար նրանց մղած պայքարում:

Մայիսի մեկին ամբողջ ազնիվ, առաջավոր մարդկությունն է՛լ ավելի կբարձրացնի բողոքի իր հուժկու ձայնը՝ ընդդեմ ֆաշիզմի սանձարձակ սև ուժերի, ընդդեմ ֆաշիստական ագրեսորների, վորոնք հոշոտում են Իսպանիայի ու Չինաստանի հերոսական ժողովուրդներին, ընդդեմ ագրեսորների, վորոնք վոտնակոխ են անում ավստրիական ժողովրդի անկախությունը, վորոնք իրենց սուրը բարձրացրել են լիտվական ու չեխական ժողովուրդների անկախության վրա:

Ամբողջ աշխարհի աշխատավորները Մայիսի մեկի որը հանդես կգան ահեղ բողոքով



ընդդեմ համաշխարհային պատերազմի վերահաս վտանգի: Մայիսի մեկը կլինի ժողովրդական հակաֆաշիստական և միասնական պրոլետարական ճակատի ուժերի հետագա համախմբման որ:

Այդ որը մեկ անգամ ևս կվորոտա ահեղ նզովքը ֆաշիզմի տրոցկիստական — բուխարինական գործակալներին, վորոնք իրենց արյունոտ ձեռքը բարձրացրել եյին ԽՍՀՄ-ի — միջազգային պրոլետարիատի հայրենիքի վրա:

Գիտական կոմունիզմի հիմնադիրներ Մարքսի և Ենգելսի արձակած կոչը, — «Պրոլետարներ բոլոր յերկրների, միացե՛ք» — այդ որը կմարմնավորվի ցույցի դուրս յեկած պրոլետարական շարասյուների մտքերի ու զգացմունքների միասնության մեջ, նրանց միահամուռ պատրաստակամության մեջ՝ պայքարելու և հաղթանակելու Կոմունիստական Ինտերնացիոնալի դրոշի տակ, Լենինի — Ստալինի անպարտելի դրոշի տակ:

## ԱՄՐԱՊՆԴԵԼ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼ ՊՐՈԼԵՏԱՐԱԿԱՆ ԿԱՊԵՐԸ

Մեր յերկրում սոցիալիզմի հաղթական շինարարության որինակը հեղափոխականա-

ցընում է ամբողջ աշխարհի պրոլետարիատին, ժողովուրդներին պայքարի յե համախմբում ընդդեմ ֆաշիզմի և պատերազմի: Պրոլետարական ամենասերտ ինտերնացիոնալ կապը — հզոր զենք է կապիտալիզմի դեմ, հանուն ամբողջ աշխարհում սոցիալիզմի հաղթանակի մղվող պայքարում: Լենինը և Ստալինը, բոլշևիկյան կուսակցությունն աշխատավորներին դաստիարակում են պրոլետարական ինտերնացիոնալիզմի վոգով: «ԽՍՀՄ բանվոր դասակարգի ինտերնացիոնալ կապերը կապիտալիստական յերկրների բանվորների հետ, — ասում է ընկեր Ստալինը, — ԽՍՀՄ բանվորների յեղբայրական դաշինքը բոլոր յերկրների բանվորների հետ, — ահա Խորհուրդների հանրապետության ուժի ու հզորության անկյունաքարերից մեկը»[1]):

Պատմությունն արդեն տվել է ինտերնացիոնալ պրոլետարական համերաշխության

[1]) Ստալին.— Հաշվետու զեկուցում կուսակցության 17-րդ համագումարին՝ Համ. Կ(բ)Կ Կենտկոմի աշխատանքի մասին — «Լենինիզմի հարցեր», եջ՝ 598, 10-րդ հրատ.:



վոչ փոքր թվով ամենապայծառ որինակներ:

Հսկայական ոգնություն են ցույց տվել Խորհրդային Ռուսաստանին կապիտալիստական յերկրների աշխատավորները քաղաքացիական պատերազմի ծանր տարիներին, յերբ ինտերվենտների հրոսակախմբերը գրոհեցին մեր հայրենիքի վրա: Ապստամբությունները ինտերվենտների զորքերի մեջ, ֆրանսիական նավաստիների հայտնի ապստամբությունը՝ ընկ. Մարտիի գլխավորությամբ, վորոնք հրաժարվեցին ռմբակոծել Ոդեսան. «գործողության կոմիտեները» Անգլիայում, վորոնք պայքարում եյին ինտերվենցիայի դեմ՝ «Ձեռքներդ հեռու Խորհրդային Ռուսաստանից» լոզունգով, — պրոլետարական համերաշխության դրսևորման այս բոլոր և շատ այլ որինակներ ոգնեցին մեզ հակահարված տալու համաշխարհային իմպերիալիզմին: Լենինն ասում եր՝ «Հենց վոր միջազգային բուրժուազիան ձեռք է բարձրացնում մեզ վրա, նրա ձեռքը բռնում են իր իսկ սեփական բանվորները[2]):

[2]) Լենին.— Յերկերի ժողովածու, հատ. 25-րդ, եջ՝ 405:

Բազմաթիվ են ու պայծառ կապիտալիստական երկրների աշխատավորների կողմից դեպի իրենց հայրենիքը — Խորհրդային Միությունը համակրանքի ու սիրո արտահայտության փաստերը, սոցիալիզմի համար խորհրդային ժողովրդի մղած պայքարի ամբողջ ճանապարհին:

Ոչ պակաս չափով պայծառ են և հուզիչ Իսպանիայի հերոսական ժողովրդի նկատմամբ աշխատավորների ինտերնացիոնալ համերաշխության օրինակները, ժողովուրդ, որը պայքարում է իտալա - գերմանական ֆաշիստական ինտերվենտների դեմ: Արտասահմանյան երկրների աշխատավորները խմբերով և մեկ-մեկ ձգտում են Իսպանիա և զենքը ձեռներին պաշտպանում են ամբողջ առաջավոր ու առաջադեմ մարդկության գործը: Ինտերնացիոնալ բրիգադները անթառամ փառքով օծեցին իրենց Մադրիդի պատերի տակ, Գվադալախարայի տակ և ռազմաճակատի մյուս շրջաններում:

Խորհրդային ժողովուրդը, որն առաջինը բարձրացրեց սոցիալիստական հեղափոխության դրոշը, որն ընթանում է ամբողջ աշխարհում կոմունիզմի հաղթանակի համար մղվող մարտերի ավանգարդում, միև-



նույն ժամանակ ցույց է տալիս նաև միջազգային պրոլետարական համերաշխության օրինակներ: Մեր երկրի աշխատավորներն օգնության եղբայրական ձեռք են մեկնում կապիտալիստական երկրների պրոլետարներին՝ կապիտալի դեմ նրանց մղած պայքարում:

Խորհրդային ժողովրդի ինտերնացիոնալ համերաշխության խոր զգացմունքը նրա մեջ դաստիարակել է Լենինի - Ստալինի կուսակցությունը, կուսակցություն՝ որը երբեք չի պարփակվել նեղ, «ազգային» շրջանակների մեջ, կուսակցություն՝ որի ուսմունքը միջազգային պրոլետարիատի ամենաարժեքավոր սեփականությունն է հանդիսանում:

Խորհրդային ժողովրդի ինտերնացիոնալիզմն ամրապնդվում, զարգանում է նաև շնորհիվ լենինյան - ստալինյան ազգային քաղաքականության հաջող կենսագործման, շնորհիվ մեծապետական շովինիզմի և տեղական, բուրժուական նացիոնալիզմի դեմ մղվող պայքարի: Լենինյան - ստալինյան ազգային քաղաքականության ճիշտ և անշեղ կիրառումը հասցրեց ազգային հանրապետությունների տնտեսական ու կուլտու-

բական ծաղկման, ՍՍՀՄ ժողովուրդների յեղբայրական բարեկամության ծաղկման և նրանց բարոյական — քաղաքական միասնության ամրապնդման:

Ընկեր Մոլոտովն ասաց, վոր մեզանում ի մի յեն ձուլվել յերկու ուժեր, — ժողովուրդը և կոմունիզմը: Այդ նշանակում է, վոր կոմունիզմի մեծ գաղափարները տիրապետել են ամբողջ ժողովուրդին, վոր կոմունիզմը վորպես մեր պայքարի ու շինարարության նպատակ՝ դարձել է ամբողջ խորհրդային ժողովրդի նպատակը: Բարոյական ու գաղափարական այդ ամենաբարձր մակարդակը, վորին հասել է խորհրդային ժողովուրդը, հանդիսանում է այն յերկաթե հիմքը, վորի վրա հիմնվում է նրա ինտերնացիոնալիզմը:

Խորհրդային ժողովուրդը հիշում է Լենինի և Ստալինի ցուցումները մեր յերկրում սոցիալիզմի հաղթանակի համար աշխատավորների միջազգային կապի ունեցած նշանակության մասին, այն մասին, վոր սոցիալիզմի վերջնական հաղթանակը մեր յերկրում, լիակատար ապահովություն ինտերվենցիայից և կապիտալիզմի ռեստավրացիայից, անհնարին են առանց մյուս յեր-



կրների պրոլետարների ոգնության, առանց խորհրդային ժողովրդի և կապիտալիստական յերկրների պրոլետարների ջանքերի միավորման:

Կապիտալիստական շրջապատման վտանգի մասին, ռազմական ինտերվենցիայի վտանգի մասին, կապիտալիստական աշխարհի հետ ռազմական ընդհարումների անխուսափելիության մասին մեզ բազմիցս նախազգուշացրել է Լենինը, նախազգուշացրել և շարունակում է նախազգուշացնել Ստալինը:

Ընկեր Ստալինը կոմյերիտական Իվանովին ուղարկած իր պատասխանի մեջ խոսելով մեր յերկրում սոցիալիզմի վերջնական հաղթանակի մասին, մատնանշեց Խորհրդային Միության արտաքին հարաբերությունների պրոբլեմի լուծման ուղիները:—

«Յերկրորդ պրոբլեմը կարելի յե լուծել միջազգային պրոլետարիատի լուրջ ջանքերը մեր ամբողջ խորհրդային ժողովրդի ե՛լ ավելի լուրջ ջանքերի հետ միացնելու կարգով միայն: Հարկավոր է ուժեղացնել և ամրապնդել ՍՍՀՄ բանվոր դասակարգի ինտերնացիոնալ

պրոլետարական կապերը բուրժուական յերկրների բանվոր դասակարգի հետ. հարկավոր է կազմակերպել բուրժուական յերկրների բանվոր դասակարգի քաղաքական ոգնությունը մեր յերկրի բանվոր դասակարգին՝ մեր յերկրի վրա ռազմական հարձակում կատարվելու դեպքում, ինչպես նաև կազմակերպել մեր յերկրի բանվոր դասակարգի բազմակողմանի ոգնությունը բուրժուական յերկրների բանվոր դասակարգին. հարկավոր է ամեն կերպ ուժեղացնել և ամրապնդել մեր Կարմիր բանակը, Կարմիր նավատորմը, Կարմիր ավիացիան, Պաշը — ավիաքիմը: Հարկավոր է մեր ամբողջ ժողովուրդը պահել մոբիլիզացիոն պատրաստության վիճակում՝ ռազմական հարձակման վտանգի հանդեպ, վորպեսզի վոչ մի «պատահականություն» և մեր արտաքին թշնամիների վոչ մի տեսակ ֆոկուսներ չկարողանան հանկարծակիի բերել մեզ...»:

Այս ցուցումները — հանդիսանում են պայքարի հստակ ծրագիր համուն ինտերնացիոնալ պրոլետարական կապերի ամրա-



պնդման ու զարգացման, հանուն կապիտալիստական աշխարհի դեմ հզոր և կործանիչ հակահարված կազմակերպելու՝ ռազմական հարձակման դեպքում:

Այս տարվա մայիսի մեկը կանցնի ինտերնացիոնալ կապերն ամեն կերպ ուժեղացնելու նշանաբանի տակ, վորպես ֆաշիզմի ու կապիտալիզմի նկատմամբ հաղթանակի գլխավոր պայման:

## ՖԱՇԻՍՏԱԿԱՆ ԳԻՇԱՏԻՉՆԵՐԸ ԲՈՐԲՈՔՈՒՄ ԵՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՀՐԴԵՀԸ

Այս տարվա մայիսի մեկն անցնում է համաշխարհային նոր պատերազմի աճած վտանգի պայմաններում: Բուրժուա — դեմոկրատական յերկրների, առաջին հերթին Անգլիայի թողտվությամբ, ֆաշիստական ագրեսորներն անպատիժ կերպով բորբոքում են համաշխարհային պատերազմի այդ հրդեհը:

Ֆաշիստական գիշատիչներն արդեն ձեռնարկել են աշխարհի բաժանմանը: Նրանք արյամբ են վողողում Իսպանիայի ու Չինաստանի հողերը: Նրանք մահ ու ավերածություն են տարածում: Նրանք բար-

բարոս կերպով վոչնչացնում են խաղաղ բնակիչներին, կանանց ու յերեխաներին:

Ֆաշիստական ագրեսորները կատարելագործվում են պրովոկացիաների և շանտաժի ասպարեզում, վորպեսզի հրահրեն ռազմական նոր ընդհարումներ: Ոգտվելով այդ անպատժությունից, Ֆաշիստական Գերմանիան հափշտակեց Ավստրիան և վոչնչացրեց ավստրիական 7 միլիոնանոց ժողովուրդի անկախությունը, դարձնելով նրան ֆաշիզմի ստրուկը:

Ֆաշիստական Գերմանիայի հետքերով է գնում նաև Ֆաշիստական Լեհաստանը: Միջադեպ ստեղծելով լեհ-լիտվական սահմանի վրա, պատերազմի ֆաշիստական պրովոկատորները ուլտիմատում ներկայացրին լիտվական կառավարությանը և նրան ստիպեցին ռազմական ներխուժման սպառնալիքի տակ ընդունել իրենց պահանջները:

Շուտով յերկու տարի կլինի, ինչ շարունակվում է ծաղր ու ծանակը և բռնությունն իսպանական ժողովրդի նկատմամբ, այսպես կոչված չմիջամտելու՝ քաղաքականության անվան տակ, վորն ըստ եության հանդիսանում է ֆաշիստական ինտերվենտներին ոգնելու քաղաքականություն:



Վոտնահարված և վոտնակոխ են արված միջազգային իրավունքի տարրական հիմքերը: «Նորմալ» են դարձել վոչ միայն այնպիսի մեթոդներն ինչպես ուլտիմատումը, այլև ռազմական ներխուժումներն այլ պետությունների տերիտորիան, ռազմական բացահայտ ինտերվենցիան, քաղաքացիական պատերազմի կազմակերպումը նշված զոհի տերիտորիայում, ֆաշիստական բանդաների հավաքագրումը՝ թիկունքի պայթեցման և ագրեսորներին ու ինտերվենտներին ոգնելու համար: Իսպանիայում ֆաշիստական ագրեսորները հանրապետական թիկունքում ստեղծել են այսպես կոչված «5-րդ զորասյուն»՝ տրոցկիստական լրտեսական-դիվերսիոն ՊՈՈՒՄ կազմակերպության գլխավորությամբ. Ֆրանսիայում գործում են «կագուլյարների» ֆաշիստական կազմակերպությունները, դե-լյա Ռոկի և տրոցկիստական անուցյալ Դորիոյի ֆաշիստական կուսակցությունը. Չեխոսլովակիայում քայքայիչ աշխատանք է կատարում Հենլեյնի ֆաշիստական կուսակցությունը: Ֆաշիզմի գործակալությունն արշավում է բոլոր յերկրներում, տարածում է պրովոկացիաներ, հավաքագրում է տեռորիստներ ու դիվեր-

սանտներ, բոլոր երկրներում հող ե պատրաստում ռազմական պայթյունի համար:

## ԸՆԴԴԵՄ ՖԱՇԻԶՄԻ, ԸՆԴԴԵՄ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՆՈՐ ՊԱՏԵՐԱԶՄԻ

1938 *թվի գարնան իրադրությունը լարված ե վոչ պակաս չափով, քան* 1914—1918 *թվականների իմպերիալիստական պատերազմի նախօրյակին: Ֆաշիստական ագրեսորներն արդեն սկսել են վերաձևել աշխարհի քարտեզը, զենքի ուժով ճնշելով թույլ երկրներին, պլացդարմներ պատրաստելով «մեծ պատերազմի» համար, պատերազմ՝ հանուն աշխարհի նոր բաժանման:*

*Նրանք իրենց նպատակ են դնում մեկուսացնել Խորհրդային Միությունը և ագրեսորների բլոկի (Գերմանիա, Իտալիա, Ճապոնիա) ընդհանուր ուժերով հարձակվել Խորհուրդների երկրի վրա, մասնատելու համար Խորհրդային Միությունը և վոչնչացնելու համաշխարհային հեղափոխական շարժման գլխավոր հենարանը:*

*Բուրժուա-դեմոկրատական կառավարությունները, չնայած նրանց սպառնացող հսկայական վտանգին, վճռական հակահար-*



*ված չեն տալիս ագրեսորներին: Բուրժուազիայի համար նրա դասակարգային շահերը միշտ բարձր են կանգնած ազգային շահերից: Հանձին ֆաշիստական երկրների տեսնելով ԽՍՀՄ-ի համաշխարհային հեղափոխության օջախի դեմ, հեղափոխական պրոլետարիատի դեմ պայքարի ցասկոտ նախաձեռնողներին, բուրժուական կառավարություններն աշխատում են չխանգարել ֆաշիստական ագրեսորներին և թողտվություն են ցուցաբերում պատերազմն սկսելու նկատմամբ, սպառնալիքի տակ դնելով իրենց երկրների ազգային շահերը:*

*Խորհրդային Միությունը վարում ե խաղաղության հետևողական քաղաքականություն, ագրեսորների դեմ կոլեկտիվ հակահարված կազմակերպելու քաղաքականություն: Հաշվի առնելով, վոր գլխավոր հակասությունն այժմ ընկած ե հաղթանակած սոցիալիզմի աշխարհի և կապիտալիզմի աշխարհի միջև, Խորհրդային Միությունը հույս ե դնում նախ և առաջ* իր սեփական ուժերի վրա:

*Մեր երկրի ժողովուրդները լավ գիտեն ֆաշիստական գիշատիչների նենգ դիտավորությունների մասին, վորոնք բացահայտ-*

վեցին խորհրդային հետախուզության կողմից:

Ֆաշիստական հափշտակիչները հույս ունեյին տրոցկիստական-բուխարինական «հինգերորդ զորասյունի» օգնությամբ պայթեցնել մեր թիկունքը, արյամբ ներկել մեր յերկիրը, վերականգնել նրանում կապիտալիստների ու կալվածատերերի իշխանությունը, մեր մեծ ժողովուրդը դարձնել գաղութային ստրուկներ, կողոպտել յերկիրը և մասնատել այն: Այդ պլանները մերկացված են և ջախջախված: Թշնամիների հույսերը յերբեք չեն իրականանա:

Խորհրդային հետախուզությունը ջախջախեց և վոչնչացրեց ֆաշիստական «հինգերորդ զորասյունը» — տրոցկիստական-բուխարինական լրտեսներին ու դիվերսանտներին:

Յեթե ֆաշիստական հափշտակիչները համարձակվեն հարձակվել մեր յերկրի վրա, նրանք կհանդիպեն պողպատե ու բետոնե հագած խորհրդային սահմանների անմատչելի ամրությանը: Սոցիալիզմի յերկիրն ուժեղ է խորհրդային ժողովրդի բարոյական-քաղաքական միասնությամբ, նրա ամենաբարձր հայրենասիրությամբ: Նա ուժեղ է իր ին-



տերնացիոնալ կապերով, իր նկատմամբ կապիտալիստական յերկրների աշխատավորների կողմից ցուցաբերվող սիրով: Վերջապես, Խորհրդային Միությունն ուժեղ է իր զինված ուժերով, վորոնց աճեցրել է Լենինի—Ստալինի կուսակցությունը:

Ստալինյան հնգամյակները զրահ ու պողպատ հագցրին յերկրին: Մեր հզոր Բանվորա-Գյուղացիական Կարմիր Բանակը զինված է մեծ քանակությամբ ավտոմատիկ հրացաններով, ժամանակակից գնդացիրներով, հրետանու բոլոր տեսակներով, բազմաթիվ տանկերով ու ինքնաթիռներով: Խորհրդային ժողովուրդն ունի առաջնակարգ ոդային նավատորմ: Մենք արդեն անմատչելի յենք դարձրել նաև յերկրի ծովային սահմաններն ու ծավալում ենք հզոր ծովային նավատորմ ստեղծելու անհրաժեշտ ծրագիրը, այնպիսի նավատորմ, վորն արժանի լինի մեծ սոցիալիստական պետությանը: Մեր բանակն ուժեղ է վոչ միայն հզոր տեխնիկայով, այլև իր կադրերով, վորոնք անսահմանորեն նվիրված են սոցիալիզմի գործին, ուժեղ է ժողովրդի հետ ունեցած իր անխզելի կապով, իր մարտիկների բարոյական-քաղաքական բարձր մակարդակով:

 

*Մայիսի մեկի օրը խորհրդային ժողովուրդը կցուցադրի իր բարոյական-քաղաքական միասնությունը, իր համախմբվածությունը բոլշևիկների կուսակցության շուրջը, խորհրդային կառավարության շուրջը, իր մեծ առաջնորդ և ուսուցիչ ընկեր* Ստալինի *շուրջը: Խորհրդային ժողովուրդը ցույց կտա իր անխորտակելի հզորությունը, իր բարձր մոբիլիզացիոն պատրաստությունը, իր սրբազան ատելությունն ու արգահատանքը դեպի ժողովրդի տրոցկիստական-բուխարինական թշնամիները, իր պատրաստակամությունը՝ պաշտպանելու սոցիալիզմի բոլոր նվաճումները:*

## ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԱՇԽԱՐՀԸ—ԱՆՇԵՂ ԾԱՂԿՄԱՆ ԱՇԽԱՐՀ Է

*Արդեն յերկրորդ հնգամյակի վերջին ԽՍՀՄ-ն իր արդյունաբերական արտադրանքով առաջին տեղը գրավեց Յեվրոպայում և յերկրորդ տեղը աշխարհում (Ամերիկայի Միացյալ Նահանգներից հետո): ԽՍՀՄ արդյունաբերական արտադրանքը* 1937 *թվին կազմում եր* 1929 *թվի արտադրանքի* 430 *տոկոսը, մինչդեռ կապիտալիստական աշ-*



*խարհի արտադրանքը* 1936 *թվին կազմում եր* 1929 *թվի համեմատությամբ միայն* 95,4 *տոկոս:*

1938 *թվին ԽՍՀՄ-ը կտա արդյունաբերական արտադրանքի նոր զգալի աճում—ավելի քան* 15 *տոկոս՝* 1937 *թվի համեմատությամբ: Պետք է հաշվի առնել, որ* աճման յուրաքանչյուր տոկոսը կազմում է մեկ միլիարդ ռուբլի,— *նշանակում է, արտադրանքի հենց միայն աճումն արժեքային արտահայտությամբ այս տարի կկազմի* 15 *միլիարդ ռուբլի:*

*Մոտավորապես յերեք անգամ ավելանում է նոր էլեկտրական կայանների գործարկումը, ընդարձակվում են դազգյահային սարքավորման գործարանները, զգալիորեն կաճեն քարածուխի արդյունաբերության, գունավոր մետալուրգիայի, թեթև արդյունաբերության մեջ կատարվող ներդրումները: Այլ կերպ ասած, մեր յերկիրն զգալիորեն կուժեղացնի իր նյութական-տեխնիկական բազան հետագա տարիներին ժողովրդական տնտեսության ե՛լ ավելի արագ աճման համար:*

1938 *թվի պլանը նախատեսում է աշխատանքի արտադրողականության աճում* (1937

թվի համեմատությամբ)—ծանր արդյունաբերության մեջ՝ 14,4 տոկոսով, թեթև ու սննդի արդյունաբերության մեջ՝ 11 տոկոսով:

Վոչ պակաս հոյակապ է գյուղատնտեսության զարգացման 1938 թվի պլանը: Արդեն 1937 թիվը ավեց մեր յերկրի պատմության մեջ չտեսնված բերք—7 միլիարդ փութ հացահատիկ: Գյուղատնտեսության բնագավառում աջ-տրոցկիստական բանդիտների կատարած վնասարարության լիկվիդացիան, խոտադաշտային ճիշտ ցանքաշրջանառության կիրառումը, տեսակավոր սերմացուով կատարվող ցանքերի զգալի ավելացումը, կերի կուլտուրաների ցանքերի վիթխարի ավելացումը՝ տրակտորների, կոմբայնների, ավտոմոբիլների, գյուղատնտեսական բարդ մեքենաների պարկի ավելացման հետ միասին,—այս բոլորը կապահովեն կոլտնտեսային ու խորհտնտեսային արտադրության հետագա վերելքը, առատաբերության աճումը: Յերկիրն անշեղորեն ընթանում է առատության յերկրի վերածվելու ուղիով:

1938 թիվը կլինի մասսաների նյութական բարեկեցության հետագա վերելքի տարի: Յերկրորդ հնգամյակի տարիների ընթաց—



քում բանվորների աշխատավարձն ավելացավ 2,1 անգամ, իսկ աշխատավարձի ֆոնդըն աճեց ել ավելի, քանի վոր աշխատավարձի միջին մակարդակի աճմանը զուգընթաց բանվորների ու ծառայողների թիվն այս տարիների ընթացքում ավելացել է 4 միլիոն հոգով: 1938 թվին աշխատավարձի ֆոնդը 1937 թվի համեմատությամբ կաճի դարձյալ մոտավորապես 13 տոկոսով:

Մեր յերկրի հուժկու զարգացման այդպիսի և դրանց նման ցուցանիշներ շատ կարելի յե բերել: Չկա ժողովրդական տնտեսության վոչ մի ճյուղ, վորը կանգնած լինի տեղում: Բոլոր բնագավառներում մենք անշեղորեն առաջ ենք գնում, խորտակելով տրոցկիստական-բուխարինական բանդիտների և ֆաշիզմի այլ գործակալների կատաղի դիմադրությունը:

Ամբողջ խորհրդային ժողովուրդը համակված է սոցիալիստական շինարարության ջերմ խանդավառությամբ, նա չունի այլ նպատակ՝ բացի կոմունիզմի նպատակից, նա չի ճանաչում այլ դրոշ՝ բացի Լենինի—Ստալինի դրոշից:

Յուրաքանչյուր խորհրդային քաղաքացի զգում է հրճվալից գիտակցումն այն բանի,

վոր ինքը սոցիալիզմի ակտիվ կառուցող է, վոր նա իր աշխատանքով կատարում է ամբողջ առաջավոր ու առաջադեմ մարդկության գործը:

## ԿԱՊԻՏԱԼԻԶՄԻ ԱՇԽԱՐՀԸ—ՍՈՎԻ ՈՒ ԱՂՔԱՏՈՒԹՅԱՆ ԱՇԽԱՐՀ Է

Միանգամայն այլ պատկեր է ներկայացնում կապիտալիզմի աշխարհը:

Նա վոչ միայն չի շարժվում առաջ, այլ սողում է դեպի նոր տնտեսական ճգնաժամը, վորի կործանիչ ուժերն արդեն գործում են 1937 թվից, հատկապես Ամերիկայի Միացյալ Նահանգներում: 1937 թվի նոյեմբերին, ճգնաժամից հետո ձեռք բերված ամենաբարձր մակարդակի համեմատությամբ արդյունաբերությունն ԱՄՆ-ում կրճատվել է 26 տոկոսով, Հոլանդիայում՝ 23 տոկոսով, Անգլիայում՝ 3 տոկոսով, Ֆրանսիայում և Ճապոնիայում՝ 4 տոկոսով:

Գործազրկությունը — կապիտալիստական յերկրների բանվոր դասակարգի համար այդ սարսափելի չարիքը—ավելի ու ավելի յե աճում վերահաս ճգնաժամի կապակցությամբ: 1936 թ. կապիտալիստական 32 յերկրներում, նույնիսկ պաշտոնական տվյալներով, յեղել են 20·500·000 գործազուրկ: Թե այդ պաշտոնական տվյալները վո՛րքանով են նվազեցնում գործազուրկների իսկական քանակությունը, յերևում է այն բանից, վոր որինակ՝ Լեհաստանում 1934 թվին տոմարագրված է յեղել գործազուրկների փաստացի թվի մեկ հինգերորդականից ել պակաս մասը:

Գործազուրկների բանակը շարունակում է աճել: Միայն Ամերիկայի Միացյալ Նահանգներում 1937 թվի սեպտեմբեր — դեկտեմբերի ընթացքում աշխատանքից հեռացվել են 2 միլիոն մարդ: Այդ ամենահարուստ յերկրում կա ավելի քան 13 միլիոն գործազուրկ, իսկ խնամքի տակ գտնվողների հետ միասին՝ մոտ 36 միլիոն մարդ:

Սովից տանջված, անելանելի աղքատության մեջ գտնվող հայրերն ու մայրերը սպանում են իրենց յերեխաներին և ինքնասպանություն գործում:

Բուրժուազիան սառնարյուն կերպով նայում է միլիոնավոր աշխատավորների տառապանքներին, կտրում է գործազրկության խղճուկ նպաստները, դաժանորեն դատաստան է տեսնում սոված, հուսահատության

ստորիճանին հասցված մարդկանց նկատմամբ։

Վերջերս հրապարակվեց իր դաժանությամբ չտեսնված մի փաստ, երբ գնդացիրների կրակով գնդակահարվեցին 3000 գործազուրկներ՝ Գաիտի կղզուց (Ամերիկա), որոնք հարևան Սան-Դոմինգո հանրապետությունն էին ուղևորվել աշխատանք փնտրելու։ Այդ երեք հազար գնդակահարված դժբախտների դիակները նետվեցին ծովը։

Ծանր, անելանելի դրության մեջ են գտնվում ոչ միայն գործազուրկները, այլև աշխատողները, հատկապես գաղութային ու կիսագաղութային երկրներում։ Անզուսպ կերպով ընկած շահույթի հետևից, կապիտալիստները քամում են աշխատավորների բոլոր հյութերը։

Գաղութային ժողովուրդների դրության մասին դատելու համար բավական է տվյալներ բերել աշխատավորների դրության մասին Ցեյլոն կղզում, որն արդեն 140 տարի է, ինչ գտնվում է անգլիական տիրապետության տակ։ Անգլիական «Լեյբոր-մոնտլի» ժուռնալն այսպես է նկարագրում դրությունը Ցեյլոնում.—



«1937 թվին աշխատավարձը Ցեյլոնում նույն մակարդակի վրա էր ինչպես 1857 թվին, թեև կենսական մինիմումի արժեքն այդ ժամանակվա ընթացքում շատ անգամ աճել է... Բնակչության 90 տոկոսից ավելին գտնվում է սովահար, մահվան եզրին...»։ «Երկու տարի սրանից առաջ միայն մի քանի ամսվա ընթացքում Ցեյլոնում սովից մեռան ավելի քան 90 հազար մարդ։ Ամբողջ գյուղեր վեր էին ածվում գերեզմանոցի... Կյանքի նորմալ տևողությունը Ցեյլոնում, եթե հաշվի առնենք ամբողջ մահացությունը, 20 տարուց էլ պակաս է»։

Կապիտալիզմը ձգտում է գաղութային ստրուկների դրության հասցնել նաև Եվրոպայի ու Ամերիկայի աշխատավորներին։

Լեհական ֆաշիստական սեյմի պատգամավոր Տոմաշկևիչի խոստովանությամբ, սիստեմատիկ թերսնումն ընդհանուր երևույթ է դարձել Լեհաստանի քաղաքներում և գյուղերում։ Լեհաստանի երիտասարդության 66 տոկոսը ֆիզիկապես թերազարգացած է, կամ թե հիվանդ՝ անբավարար սնվելու հետևանքով։

Լեհական «Ռոբոտնիկ» թերթը—օրգան

լեհական սոցիալ-դեմոկրատական կուսակցության,—1938 թվի փետրվարի 19-ի համարում տպագրել էր մի հոդված, հետևյալ վերնագրով. «Թոքախտից մեռնում է Լեհաստանի յուրաքանչյուր 6 բնակչից մեկը»: Այդ հոդվածի մեջ թերթը գրում է. «Լեհաստանում 33 միլիոն բնակչության ընկնում է մեկ միլիոն թոքախտավոր հիվանդ: Ամեն տարի մեռնում են հարյուր հազար հոգի (Լեհաստանի վոլբերդական ռեկորդը յեվրոպական 19 պետությունների մեջ)»:

Նույնիսկ պաշտոնական տվյալներով, Լեհաստանում արդեն պայծառորեն նկատվում է բնակչության աճման կրճատումը:

Ամբողջ աշխարհը գիտե լեհական գյուղում տիրող աղետալի դրության մասին: Գյուղացիական շատ ընտանիքներում արդեն վաղուց վոչինչ չի մնացել բերքից և նրանք սովի յեն մատնված: Գյուղացիները տանիքներից պոկում են ծղոտը անասուններին կերակրելու համար. նրանք հուսահատ սպասում են գարնանը. սերմացու չկա ցանքի համար: Պատահական չէ, վոր Լեհաստանում աճում են գյուղացիական հուզումները, բռնկվում են այնպիսի ահեղ գործադուլներ, ինչպիսին տեղի ունեցավ 1937



թվի ոգոստոսին: Նույնպիսի դրություն է նաև ֆաշիստական Գերմանիայում, Ճապոնիայում, Իտալիայում, Ռումինիայում: Որինակ, չեխոսլովակյան մամուլի տվյալներով, գերմանական գյուղացիների յեկամուտը 1932 թվի համեմատությամբ կրճատվել է մոտավորապես 30 տոկոսով:

Ռումինական վիճակագրության համաձայն, հարկերը և պարտքերը չվճարելու համար 1933 թվին աճուրդով վաճառվել են 1322 գյուղացիական տնտեսություն, 1936 թվին՝ 5997 տնտեսություն:

Իրավազրկություն, կարիք, աղքատություն, սով, մահացության աճում և ծննդաբերության անկում—ահա թե ինչ է բերում աշխատավորների համար կապիտալիզմը, ֆաշիզմը:

Այդ ծանր, աղքատ, ստրկային վիճակը, վորն ե՛լ ավելի յե վատթարանում նոր տնտեսական ճգնաժամի խորացմանը զուգընթաց, կապիտալիստական յերկրների աշխատավորներին վճռական մարտի յե դրդում կապիտալիզմի դեմ, ֆաշիզմի դեմ: Լայնանում և աճում է միասնական պրոլետարական ճակատը, ժողովրդական հակաֆաշիս-

տական ճակատը: Դասակարգային կռիվները, գործադուլները չեն դադարում:

Կապիտալիստական երկրների բանվորներն արդեն ունեն պայծառ օրինակն այն բանի, թե ինչի կարող են հասնել նրանք, հաղթելով կապիտալիզմին: Խորհրդային Միության հաջողությունները—հուժկու կոչ են հանդիսանում վճռական պայքարի ելնելու ընդդեմ կապիտալիստական շահագործման ու ճնշման:

## ԼԵՆԻՆԻ—ՍՏԱԼԻՆԻ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԴՐՈՇԻ ՏԱԿ ԴԵՊԻ ՆՈՐ ՀԱՂԹԱՆԱԿՆԵՐ

Խորհրդային ժողովուրդը 49-րդ մայիսյան կտոնի լիակատար գիտակցելով իր հզորությունը, իր բարոյական ու քաղաքական միասնությունը, պարզ ու հպարտորեն գիտակցելով իր մեծ ապագան:

Լենինի—Ստալինի կուսակցությունը մեր հաղթանակների առաջնորդն ու կազմակերպիչն է: Կուսակցության ղեկավարությամբ խորհրդային ժողովուրդը ջախջախելով սոցիալիզմի բոլոր թշնամիներին, հասավ իր երջանկությանը, ազատ, հրճվալից կյանքին: Եվ մայիսմեկյան դրոշների վրա կշող-



շողան սիրո, նվիրվածության ու վողջույնի խոսքեր ուղղված լենինյան կուսակցությանը, մեծ Ստալինին, Խորհրդային կառավարությանը:

Մեր առջև խնդիր է դրանված—այս տարի հասնել սոցիալիստական արդյունաբերության նոր, բուռն զարգացման: Լիկվիդացիայի ենթարկելով տրոցկիստական-բուխարինական-ռիկովական ֆաշիստական բանդիտների վնասարարության հետևանքները, ղեկավար աշխատանքի առաջ քաշելով նոր կադրեր, վորոնք մինչև վերջ նվիրված են ժողովրդի գործին, Խորհրդային Միությունը կհասնի ժողովրդական տնտեսության հետագա վերելքի և աշխատավորների նյութական բարեկեցության էլ ավելի բուռն ծաղկման:

1938 թիվը պետք է լինի ստախանովյան շարժման՝ վորպես մասսաների շարժման՝ բուռն զարգացման տարի: Կուսակցության ցուցումներն այն մասին, վոր պետք է առանձին ռեկորդներից անցնել ամենալայն մասսաների ստախանովյան աշխատանքի, մենք կիրականացնենք բոլշևիկյան հետևողականությամբ ու հաստատակամությամբ:

Ավելի լայնացնել ստախանովյան շարժման

ճակատը—ահա միլիոնավոր աշխատավորների կոչը:

1938 թիվը կլինի գյուղատնտեսության հետագա ծաղկման համար պայքարելու տարի: Սոցիալիստական հողագործության ու անասնապահության աշխատողները պետք է բոլոր ջանքերը գործ դնեն, վորպեսզի լիկվիդացիայի յենթարկելով վնասարարության հետևանքները, լայնությամբ ու խորությամբ ծավալելով ստախանովյան շարժումը, կատարեն ստալինյան առաջադրանքը—տան 7—8 միլիարդ փութ հացահատիկ, յերկրին տան գյուղատնտեսական մթերքների առատություն:

Այս խնդրի հաջող իրականացման հիմքն է հանդիսանում գարնանացանը ստախանովաբար անցկացնելը:

Վիթխարի յեն մեր հաջողությունները կուլտուրայի և գիտության բնագավառում: Բավական է մատնանշել, պապանինյան եքսպեդիցիայի հաջող ավարտումը: Պապանինականները, վորոնք նվաճեցին Հյուսիսային բևեռը, բաց արին բևեռային ավազանի գաղտնիքները, հսկայական արժեք ունեցող ավանդ մտցրին համաշխարհային գիտության մեջ:



Մայիսի մեկի որը մենք լի վճռականությամբ պայքարի դուրս կգանք հանուն մեծ խորհրդային յերկրի բոլոր ժողովուրդների սոցիալիստական կուլտուրայի նոր ծաղկման:

Խորհրդային ժողովուրդն արդեն բազմիցս ցուցադրել է իր բարոյական – քաղաքական միասնությունը: Այդ հատկապես պայծառորեն դրսևորվեց ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունների հանդիսավոր օրերին, յերբ խորհրդային ժողովուրդը ցնծությամբ, միահամուռ կերպով ձայն տվեց իր ընտրյալների օգտին: Այդ միասնությունը դրսևորվեց նաև հակախորհրդային «աջ–տրոցկիստական բլոկի» դատավարության օրերին, յերբ մոլեգնում եր ժողովրդական ցասման մրրիկը:

Մեր պետության հզորության հետագա ուժեղացում, խորհրդային ժողովրդի ե՛լ ավելի սերտ համախմբում ձեռք կբերվեն միութենական ու ավտոնոմ հանրապետությունների Գերագույն Խորհուրդների ընտրությունների ժամանակ: Մայիսի մեկը կանցնի այդ ընտրությունների նախապատրաստումը ծավալելու նշանաբանով: Օգտագործելով նախորդ ընտրական կամպանիայի

հարուստ փորձը, պետք է ագիտացիոն— բացատրական ամենալայն աշխատանք ծավալել բնակչության մեջ, հասնելով այն բանին, վորպեսզի յուրաքանչյուր ընտրող լավ գիտենա իր հանրապետության հաջողությունների ու նվաճումների մասին, լավ գիտենա Ստալինյան Սահմանադրությունը, իր հանրապետության «Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրությունը», ճանաչի առաջադրված թեկնածուներին:

Օր—օրին մասսաների մեջ տանենք բոլշևիկյան ճշմարտությունը, ե՛լ ավելի ամուր համախմբենք կոմունիստների ու անկուսակցականների ստալինյան անխորտակելի բլոկը, ե՛լ ավելի բարձրացնենք խորհրդային ժողովրդի քաղաքական ու արտադրական ակտիվությունը:

Միութենական ու ավտոնոմ հանրապետությունների գերագույն օրգանների ընտրությունները մեկ անգամ ևս կցուցադրեն ամբողջ աշխարհին, թե ո՛րքան ամուր է և անխորտակելի խորհրդային իշխանության հիմքը—բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության դաշինքը: Այդ դաշինքն ամրապնդված է մեր մեծ հաղթանակներով, վորոնք ձեռք են բերել ներքին



ու արտաքին թշնամիների նկատմամբ: Այն, այժմ հիմնվում է սոցիալիզմի հզոր բազայի վրա: Յեվ չկա աշխարհում այնպիսի ուժ, վորը կարողանա քանդել այդ մեծ դաշինքը:

Մեր պետության ուժն ու հզորությունը խորհրդային հանրապետությունների ժողովուրդների յեղբայրական միասնության մեջ է, անծայրածիր Խորհրդային Միության բոլոր ժողովուրդների շահերի ընդհանրության մեջ:

Ժողովրդի թշնամիները — տրոցկիստական – բուխարինական բանդիտները — Ուկրաինայի, Բելոռուսիայի, Ուզբեկստանի, Տաջիկստանի, Հայաստանի, Վրաստանի, Ադրբեջանի բուրժուական նացիոնալիստների հետ միասին ծրագրում եյին մաս առ մաս վաճառել մեր հայրենիքը, փորձում եյին ձեռք բարձրացնել միութենական հանրապետությունների անկախության վրա, վորպեսզի ստրկացնեյին ԽՍՀՄ ազատ ժողովուրդներին, նրանց դարձնեյին ֆաշիզմի գաղութային ստրուկներ:

Ամեն ինչ փոշիացնող զայրույթով ու արհամարհանքով պատասխանեցին Խորհրդային յերկրի ժողովուրդները բուրժուական

 

նացիոնալիստների, ֆաշիստական լրտեսների ստոր ոտնձգություններին, որոնք ձեռք էին բարձրացրել սոցիալիզմի աշխատավորների ազատության ու երջանկության վրա:

Ոչ ոքի չի՛ հաջողվել և չի՛ հաջողվի թուլացնել ԽՍՀՄ ժողովուրդների եղբայրական դաշինքը: Այդ դաշինքն ամրապնդված է ինտերվենցիայի տարիներին թափված արյամբ, ներքին ու արտաքին հակահեղափոխության դեմ մղված համատեղ պայքարով: Այդ եղբայրական դաշինքը մարմնավորվել է անցյալում հետամնաց, ընկճված, ճնշված ժողովուրդների տնտեսության ու կուլտուրայի հուժկու ծաղկման մեջ, ժողովուրդներ՝ որոնք այժմ ռուս մեծ ժողովրդի հետ ձեռք ձեռքի տված ընթանում են դեպի կոմունիզմի բարձունքները: Թող մայիսմեկյան շարասյուների վրա հնչի կոչը՝ ե՛լ ավելի ամրապնդելու ԽՍՀՄ ժողովուրդների դաշինքն ու անխորտակելի բարեկամությունը:

Խորհրդային ժողովուրդը մայիսմեկյան իր տոնակատարությունը դուրս կգա հիշելով կապիտալիստական շրջապատման մասին, պատերազմի ֆաշիստական հրձիգների



մասին, ֆաշիզմի տրոցկիստական - բուխարինյան գործակալների մասին, որոնք պատրաստում էին ԽՍՀՄ-ի պարտությունը: Խորհրդային ժողովուրդը ճզմեց ֆաշիզմի այդ ստոր վարձկաններին և պատրաստ է կործանիչ հակահարված հասցնելու նրանց ֆաշիստական տերերին: Խորհրդային ժողովուրդն անցել է դասակարգային պայքարի մեծ դպրոց, սովորել է ճանաչել թշնամիներին՝ ինչպիսի կերպարանք էլ մտած լինեն նրանք: Նա ոգնում է և կոգնի խորհրդային պանծալի հետախուզությանը՝ խորհրդային հողը լիովին մաքրելու բոլոր իժերից ու մատնիչներից: Նրանք կյանք չունե՛ն և չե՛ն ունենա խորհրդային հողի վրա:

Մայիսի մեկին խորհրդային ժողովուրդը կցուցադրի իր մարտական պատրաստակամությունը՝ ամեն մի րոպե կանգնելու հայրենիքի պաշտպանության դիրքում: Կուսակցության ու կառավարության առաջին իսկ կոչով, մեծ Ստալինի կոչով ամբողջ 170 միլիոնանոց խորհրդային ժողովուրդը մեկ մարդու պես ոտքի կկանգնի և իր ամբողջ հզոր ուժը, ռազմական տեխնիկա-

յի ամբողջ հզորությունը կթափի թշնամիների գլխին:

Մենք կողմնակից ենք խաղաղության: Մենք մինչև վերջը պաշտպանում ենք և կպաշտպանենք խաղաղության գործը: Բայց մենք պատրաստ ենք երկրի պաշտպանության համար: Թող թշնամին գիտենա, որ խորհրդային հողը սրբազան է և անձեռնմխելի: Մայիսմեկյան ցույցերը մեկ անգամ ևս ցույց կտան մեծ ժողովրդի անխորտակելի ուժը, ժողովուրդ՝ որը Լենին-Ստալինի անպարտելի դրոշի տակ, միջազգային պրոլետարական համերաշխության դրոշի տակ, համաշխարհային պրոլետարական հեղափոխության դրոշի տակ գնում է դեպի կոմունիզմը:



# 1938 ԹՎԻ ՄԱՅԻՍԻ ՄԵԿԻ ՇՈՒՐՋԸ ԶԵԿՈՒՅՑՈՒՄՆԵՐԻ ՅԵՎ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՈՐԻՆԱԿԵԼԻ ՊԼԱՆՆԵՐ

Փորձի փոխանակման կարգով տալիս ենք 1938 թվի մայիսի մեկի շուրջը զեկուցումների և զրույցների օրինակելի պլանները, որ կազմել են Մոսկվա քաղաքի ագիտատորներ ընկ. ընկ. Լ. Յե. Նեզլինը (Տրիկոտաժային մեքենաների գործարան), Գ. Մ. Կամենսկին (Ելեկտրոսվետ գործարան) Կոզլովան (ՀամԿ(բ)Կ Յերկաթուղային ռայկոմ), Սկվորցովը (ՀամԿ(բ)Կ Մոսկվայի Կոմինտեռնի կուսկաբինետ):

## ԶԵԿՈՒՅՑՄԱՆ ՊԼԱՆ

### I. ՄԱՅԻՍԻ ՄԵԿԻ ՏՈՆԻ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

Մայիսի մեկը — աշխատանքի միջազգա-

յին տոնն է — միջազգային պրոլետարական համերաշխության օր։

Կապիտալիստական յերկրներում մայիսի մեկը—այդ՝ միջազգային պրոլետարիատի և աշխարհի բոլոր ճնշված ժողովուրդների հեղափոխական ուժերի մարտական ստուգատեսն է կապիտալիզմի դեմ և առաջին հերթին արյունարբու ֆաշիստական դիկտատուրայի դեմ, պատերազմի ու սովյության դեմ, հանուն ազատության ու դեմոկրատիզմի, հանուն խաղաղության, հանուն սոցիալիզմի մղվող պայքարում։

ԽՍՀՄ-ում մայիսի մեկը—այդ՝ հաղթանակած սոցիալիզմի համաժողովրդական հրճվալից տոնն է, Լենինի – Ստալինի կուսակցության շուրջն ամբողջ խորհրդային ժողովրդի յերկաթակուռ համախմբվածության հուժկու ցուցադրումը, համաժողովրդական պատրաստակամության ցուցադրումը՝ է՛լ ավելի ամրապնդելու ԽՍՀՄ ուժըն ու հզորությունը, պաշտպանելու խաղաղությունը պատերազմի ֆաշիստական հրձիգներից։

## II· ՊՐՈԼԵՏԱՐԻԱՏԻ ՈՒԺԸ ՆՐԱ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՀԱՄԵՐԱՇԽՈՒԹՅԱՆ ՄԵՋ Է

Մարքսի և Էնգելսի համաշխարհային-



պատմական կոչը—«Պրոլետարնե՛ր բոլոր յերկրների, միացե՛ք»։ Ինտերնացիոնալ պրոլետարական համերաշխության մարտական լոզունգներն առաջին մայովկաների դրոշների վրա։ Յերկրորդ Ինտերնացիոնալի օպորտունիստների դավաճանությունը մայիսմեկյան տոնի մարտական տրադիցիաներին։

Միայն Լենինի – Ստալինի կուսակցությունը բարձր պահեց պրոլետարական մայովկաների մարտական դրոշը, միջազգային պրոլետարական իսկական համերաշխության դրոշը։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ հեղափոխությունը վորպես համաշխարհային պրոլետարական հեղափոխության ըսկիզբը։ Խորհուրդների հանրապետության պաշտպանությունը բոլոր յերկրների պրոլետարիատի կողմից։ Սոցիալիստական շինարարության հաջողությունների միջազգային վիթխարի նշանակությունը ֆաշիզմի դեմ մղվող պայքարում բոլոր յերկրների բանվորների և ճնշված մասսաների դիրքերի ուժեղացման համար։ Ինտերնացիոնալ կապերն ամեն կերպ ամրապնդելը ֆաշիզմի և կապիտալիզմի նկատմամբ հաղթա-

նակ տանելու գլխավոր պայմանն է:

Միջազգային պրոլետարիատի լուրջ ջանքերի միացումը խորհրդային ժողովրդի է՛լ ավելի մեծ ջանքերի հետ վորպես մեր յերկրում սոցիալիզմի վերջնական հաղթանակի անհրաժեշտ պայման: «Հարկավոր է ուժեղացնել և ամրապնդել ԽՍՀՄ բանվոր դասակարգի ինտերնացիոնալ պրոլետարական կապերը բուրժուական յերկրների բանվոր դասակարգի հետ»: (Ստալին):

## III. ԸՆԴԴԵՄ ՖԱՇԻԶՄԻ, ԸՆԴԴԵՄ ՊԱՏԵՐԱԶՄԻ

1938 թվի գարնան իրադրությունը հիշեցնում է 1914 թվի իմպերիալիստական պատերազմի նախօրյակը: Պատերազմն արդեն տեղի յե ունենում: Իսպանիայում այն բորբոքեցին Գերմանիայի և Իտալիայի ֆաշիստները, Չինաստանում՝ Ճապոնիայի իմպերիալիստները: Խրախուսվելով Անգլիայի այսպես կոչված՝ «չմիջամտելու» քաղաքականությունից, հիտլերյան Գերմանիան օկուպացիայի յենթարկեց Ավստրիան և հարված է պատրաստում Չեխոսլովակիայի դեմ: Լեհաստանը սպառնալով ռազմական ներխուժմամբ, ուլտիմատում ներկայացրեց



Լիտվային: Ֆաշիստական ագրեսորներն ուզում են բորբոքել համաշխարհային պատերազմի հրդեհը: Ամբողջ աշխարհը դրված է նոր կործանիչ պատերազմի սպառնալիքի տակ: Ֆաշիզմի ու պատերազմի ճակատին դեմ հանդիման կանգնած է միասնական պրոլետարական ու ժողովրդական հակաֆաշիստական ճակատը: Հանուն բանվոր դասակարգի միասնության, հանուն բոլոր աշխատավորների միասնության, ընդդեմ պատերազմի ֆաշիստական հրձիգների: Իսպանական ժողովրդի հերոսական պայքարը հանուն ազատության ու անկախության: Չինական ժողովրդի հակաճապոնական ազգային ճակատը: Ժողովրդական ճակատի հաջողություններն ու հակաֆաշիստական ուժերի համախմբումը Ֆրանսիայում և մյուս յերկրներում: Աշխատավորների միջազգային լայն համերաշխությունն Իսպանիայի և Չինաստանի հերոսական ժողովուրդների նկատմամբ:

## IV. ՖԱՇԻՍՏՆԵՐՆ ԱՐՇԱՎԱՆՔ ԵՆ ՊԱՏՐԱՍՏՈՒՄ ԽՈՐՀՈՒՐԴՆԵՐԻ ՅԵՐԿՐԻ ԴԵՄ

Ֆաշիզմի գլխավոր նպատակն է՝ հարձակվել Խորհուրդների յերկրի վրա, մաս-

նատել այն, վերականգնել կապիտալիստական ստրկության կարգերը: Հակախորհրդային «աջ-տրոցկիստական բլոկի» դավաճանությունը մերկացրեց ֆաշիստական հափշտակիչների պլանները, յերևան բերեց միջազգային պրովոկատորների ու պատերազմի հրձիգների գազանային կերպարանքը: Ֆաշիզմի անարգ վարձկանները, տրոցկիստական-բուխարինական-ուկլոնական խժերը բռնվեցին ու ճզմվեցին: Ամբողջ խորհրդային ժողովուրդը նվիրված կերպով ոգնում է իր պանծալի հետախուզությանը և անդուլ կերպով ամրապնդում է յերկրի պաշտպանությունը: Մեր յերկրի աշխատավորները ամուր հիշում են ստալինյան այն խոսքերը, վոր՝ «հարկավոր է ամեն կերպ ուժեղացնել և ամրապնդել մեր Կարմիր Բանակը, Կարմիր Նավատորմը, Կարմիր ավիացիան, Պաջը — ավիաքիմը»:

## V. ՍՏԱԼԻՆՅԱՆ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹՅԱՆ ԴՐՈՇԻ ՏԱԿ

Ստալինյան Սահմանադրության դրոշի տակ Խորհուրդների յերկրի մարդիկ իրենք ստեղծում են իրենց նոր կյանքը: Սոցիալիզմը մեզանում մտել է ժողովրդի կենցաղի մեջ:



Կոմունիստների և անկուսակցականների ստալինյան բլոկի փայլուն հաղթանակը ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունների ժամանակ, վորպես մեր հեղափոխության բոլոր նվաճումների ամենապայծառ արդյունքը: Միութենական ու ավտոնոմ հանրապետությունների Գերագույն Խորհուրդների առաջիկա ընտրությունները պետք է պսակվեն ստալինյան բլոկի նոր հաղթանակներով: Լավ ուսումնասիրել Սահմանադրությունը և իրենց հանրապետության ընտրական որենքը: Ել ավելի բարձրացնել մասսաների քաղաքական ակտիվությունը:

Ժողովրդական տնտեսության բուռն աճումը: Ստալինյան յերրորդ հնգամյակի առաջին տարվա վեհ պլանը: Արդյունաբերության առաջավորների — խորհրդային մետալուրգների, հանքափորների և այլոց հաջողությունները: Պայքարը հանուն սոցիալիստական կուլտուրայի՝ արտադրության մեջ, հանուն աշխատանքի ու արտադրանքի բարձր վորակի: Բոլշևիկորեն, ստալինաբար անցկացնենք գարնանացանը: Գյուղատնտեսական աշխատանքների պետական պլանի որինակելի կատարումով ապա-

հովենք 7—8 միլիարդ փութ հացահատիկի ստալինյան բերքը:

Սոցիալիստական մրցության և հարվածայնության մասին 16-րդ կուսկոնֆերանսի դիմումի 9-րդ տարեդարձը: «Մրցությունը սոցիալիզմի շինարարության կոմունիստական մեթոդն է...»: (Ի. ՍՏԱԼԻՆ): Ստախանովյան շարժումը վորպես մրցության բարձրագույն աստիճան: Ստախանովյան շարժման ուժը նրա մասսայականության մեջ է: Լայնությամբ ու խորությամբ ծավալենք ստախանովականների շարժումը:

## VI. ԽՍՀՄ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՀՐՃՎԱԼԻՑ ՈՒ ՅԵՐՋԱՆԻԿ ԿՅԱՆՔԸ

«...Ամենաարժեքավոր ու ամենավճռական կապիտալը հանդիսանում են մարդիկ, կադրերը»: (Ստալին):

Մեր յերկրի աշխատավորների ցնծագին հրճվանքը, աշխատավորներ՝ վորոնք ընդմիշտ վերջ են դրել մարդու շահագործմանը մարդու կողմից, գործազրկությանը՝ քաղաքում և աղքատությանը՝ գյուղում: Մասսաների նյութական բարեկեցության բուռն աճումը: Բովանդակությամբ սոցիալիստական, ձևով ազգային խորհրդային



կուլտուրայի ծաղկումը: ԽՍՀՄ ժողովուրդների ստալինյան անխորտակելի բարեկամությունը:

Պապանինյան պանծալի եքսպեդիցիան դեպի Հյուսիսային բևեռ, վորպես խորհրդային ժողովրդի տրիումֆ:

## VII. ԱՂՔԱՏՈՒԹՅԱՆ ՈՒ ԻՐԱՎԱԶՐԿՈՒԹՅԱՆ ՃԻՐԱՆՆԵՐՈՒՄ

Կապիտալիստական աշխարհը սողում է դեպի նոր տնտեսական ճգնաժամ: Աշխատավորների ծանր, իրավազուրկ դրությունը: Գործազրկություն, աշխատավարձի իջեցում, սով, աղքատություն: Մահացության և հիվանդությունների աճումը ֆաշիզմի յերկրներում: Ֆաշիստական կամայականության ճիրաններում կաշկանդված ժողովրդական մասսաներն ավելի ու ավելի յեն համոզվում, վոր ֆաշիզմը՝ այդ պատերազմ է ու սով, իսկ սոցիալիզմը՝ այդ խաղաղություն է և առատություն:

## VIII. ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅՐԵՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆՆ ԱՌԱՋ Է ՄՂՈՒՄ ՄԵՐ ԱՄԲՈՂՋ ԿՅԱՆՔԸ

Խորհրդային Միությունը հաստատապես ու վճռականորեն պաշտպանում է խաղա-

ղությունը հօգուտ ամբողջ մարդկության շահերի, հօգուտ դեմոկրատիայի շահերի, հօգուտ առաջադիմության շահերի: Բայց խորհրդային մարդիկ ոչ մի րոպե չեն մոռանում ընկեր Ստալինի ցուցումները կապիտալիստական շրջապատման մասին:

Խորհրդային հայրենասիրության զգացմունքը հատուկ է ամբողջ ժողովրդին: (Օրինակներ մեր սահմանապահների կյանքից, առօրյա իրականությունից):

Միշտ լինել արթուն, վորպեսզի թշնամին չկարողանա հանկարծակիի բերել մեզ: Տասնապատկել բոլշևիկյան զգաստությունը, կարողանալ ճանաչել թշնամուն՝ ինչ դիմակ էլ հագած լինի նա: Անողոքաբար և մինչև վերջ արմատախիլ անել տրոցկիստական-բուխարինական լրտեսներին ու դիվերսանտներին — արյունարբու Ֆաշիզմի այդ առաջավոր ջոկատը: Եթե թշնամին համարձակվի հարձակվել, ապա ամբողջ յերկիրը՝ փոքրից մինչև մեծը՝ կկանգնի հայրենիքի պաշտպանության դիրքում: Մենք թշնամուն կհարվածենք այն տերիտորիայի վըրա, վորտեղից նա յեկել է: Այսպես ենք մենք դաստիարակված Լենինի — Ստալինի կուսակցության կողմից:



## IX. ԼԵՆԻՆԻ — ՍՏԱԼԻՆԻ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՀԱՂԹԱՆԱԿՆԵՐԻ ԿԱԶՄԱԿԵՐՊԻՉ

Բոլշևիկների կուսակցությունը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ հեղափոխության հաղթանակների կազմակերպիչ, քաղաքացիական պատերազմի ճակատներում տարված հաղթանակների կազմակերպիչ, սոցիալիստական շինարարության հաղթանակների կազմակերպիչ:

Լենինի — Ստալինի կուսակցությունը ԽՍՀՄ աշխատավորների առաջավոր ջոկատ, կուսակցություն՝ վորը «համարձակորեն ու մինչև վերջը պաշտպանում է բանվորների ու գյուղացիների շահերը» (Ստալին): Սերտ կապ մասսաների հետ, ղեկավարության մասսաների նկատմամբ — այսպիսին են բոլշևիկյան սկզբունքները. «...քանի բոլշևիկները կապ են պահպանում ժողովրդի լայն մասսաների հետ, նրանք կլինեն անպարտելի» (Ստալին):

Կուսակցական աշխատանքի վերակառուցումը ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունների նախապատրաստվելու կա-

ղությունը հողում ամբողջ մարդկության շահերի, հողում դեմոկրատիայի շահերի, հողում առաջադիմության շահերի: Բայց խորհրդային մարդիկ վոչ մի րոպե չեն մոռանում ընկեր Ստալինի ցուցումները կապիտալիստական շրջապատման մասին:

Խորհրդային հայրենասիրության զգացմունքը հատուկ է ամբողջ ժողովրդին: (Որինակներ մեր սահմանապահների կյանքից, առորյա իրականությունից):

Միշտ լինել արթուն, վորպեսզի թշնամին չկարողանա հանկարծակիի բերել մեզ: Տանապահել բոլշևիկյան զգաստությունը, կարողանալ ճանաչել թշնամուն՝ ինչ դիմակ էլ հագած լինի նա: Անողոքաբար և մինչև վերջ արմատախիլ անել տրոցկիստական-բուխարինական լրտեսներին ու դիվերսանտներին — արյունարբու ֆաշիզմի այդ առաջավոր ջոկատը: Յեթե թշնամին համարձակվի հարձակվել, ապա ամբողջ յերկիրը՝ փոքրից մինչև մեծը՝ կկանգնի հայրենիքի պաշտպանության դիրքում: Մենք թշնամուն կհարվածենք այն տերիտորիայի վրա, վորտեղից նա յեկել է: Այսպես ենք մենք դաստիարակված Լենինի – Ստալինի կուսակցության կողմից:



## IX. ԼԵՆԻՆԻ – ՍՏԱԼԻՆԻ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ՝ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՀԱՂԹԱՆԱԿՆԵՐԻ ԿԱԶՄԱԿԵՐՊԻՉ

Բոլշևիկների կուսակցությունը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Հեղափոխության հաղթանակների կազմակերպիչ, քաղաքացիական պատերազմի ճակատներում տարված հաղթանակների կազմակերպիչ, սոցիալիստական շինարարության հաղթանակների կազմակերպիչ:

Լենինի – Ստալինի կուսակցությունը ԽՍՀՄ աշխատավորների առաջավոր ջոկատ, կուսակցություն՝ վորը «համարձակորեն ու մինչև վերջը պաշտպանում է բանվորների ու գյուղացիների շահերը» (Ստալին): Սերտ կապ մասսաների հետ, ղեկավարություն մասսաների նկատմամբ — այսպիսին են բոլշևիկյան սկզբունքները. «...քանի բոլշևիկները կապ են պահպանում ժողովրդի լայն մասսաների հետ, նրանք կլինեն անպարտելի» (Ստալին):

Կուսակցական աշխատանքի վերակառուցումը ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունների նախապատրաստվելու կա-

պակցությամբ, ամրապնդեց կուսակցական օրգանները, բարձրացրեց կուսակցական անդամների ակտիվությունը, ուժեղացրեց կուսակցության հեղինակությունը մասսաների մեջ: Կուսակցական ղեկավար օրգանների ընտրությունները՝ ներկուսակցական դեմոկրատիայի խստորեն պահպանման և բոլշևիկյան քննադատության ու ինքնաքննադատության համարձակորեն ծավալման հիման վրա՝ է՛լ ավելի կբարձրացնեն Լենինի - Ստալինի կուսակցության ուժն ու հզորությունը:

Բոլշևիզմին տիրապետելը ներկայիս ժամանակաշրջանի ամենաանհրաժեշտ խնդիրն է:

Խորհրդային Միության աշխատավոր մասսաների համախմբումը բոլշևիկների կուսակցության շուրջը, ժողովուրդների առաջնորդ Ստալինի շուրջը, վորպես հետագա հաջողությունների յերաշխիք, առաջխաղացման յերաշխիք՝ կոմունիզմի նոր հաղթանակներ նվաճելու համար:

## ԶՐՈՒՅՑԻ ՊԼԱՆԸ

1. Մայիսի մեկը խորհրդային ժողովուրդը դիմավորում է սոցիալիստական շինա-



րարության նոր հաղթանակների և սոցիալիստական կուլտուրայի ծաղկման պայմաններում: Մայիսի մեկի տոնակատարությունը մեզանում անցնում է միութենական ու ավտոնոմ հանրապետությունների Գերագույն Խորհուրդների ընտրությունների ծավալուն նախապատրաստման նշանաբանի տակ: Այդ ընտրությունների հիմքում ընկած է Ստալինյան Սահմանադրությունը, աշխարհում ամենադեմոկրատիկ Սահմանադրությունը: Ընտրությունները որինակելիորեն նախապատրաստելով, ապահովենք կոմունիստների և անկուսակցականների ստալինյան բլոկի նոր հաղթանակները, սոցիալիստական շինարարության նոր հաջողությունները:

2. Մայիսի մեկը մենք դիմավորում ենք միջազգային լարված իրադրության մեջ: Կապիտալիստական աշխարհը, վորին հոշոտում են իր ներքին հակասությունները, փրկություն է վորոնում պատերազմի մեջ: Ֆաշիստական Գերմանիան ու Իտալիան արդեն բացե ի բաց արյունալի պատերազմ են մղում Իսպանական հերոս ժողովրդի դեմ և հրահրում են ժողովուրդների նոր կործանարար սպանդ (Գերմանիայի ոկուպացիայի

յենթարկեց Ավստրիան և հարված է պատրաստում Չեխոսլովակիայի դեմ. լեհական ուլտիմատումը Լիտվային. Թողտվությունը ագրեսորներին՝ բուրժուա-դեմոկրատական յերկրների կառավարությունների կողմից և այլն): Ճապոնական իմպերիալիզմը գազանաբար բնաջինջ է անում չինական հերոս ժողովրդին: Պատերազմի փաշիստական հրձիգներն արշավանք են պատրաստում համաշխարհային պրոլետարիատի հայրենիքի — ԽՍՀՄ-ի դեմ:

Այս բոլորը մեզ սովորում են լինել արթուն և հիշել, վոր «Մենք շրջապատված ենք այնպիսի մարդկանցով, դասակարգերով, կառավարություններով, վորոնք բացահայտորեն մեծագույն ատելություն են տածում դեպի մեզ: Պետք է հիշել, վոր ամեն մի արշավանք մեր դեմ միշտ մազից է կախված»: (Լենին, հատ. 27-րդ, եջ 117):

3. Տրոցկիստական – բուխարինական-ռիկովական սրիկաները, փաշիզմի արյունարբու շները մտադրվել եյին վաճառել մեր հայրենիքը, վերականգնել կապիտալիզմը: Նրանք սպանում եյին խորհրդային ժողովրդի լավագույն զավակներին, վնաս-



արություն եյին կատարում, պետական գաղտնիքները հայտնում եյին թշնամիներին, պատրաստվում եյին ԽՍՀՄ-ի վրա ռազմական հարձակում կատարվելու դեպքում բաց անել ճակատը թշնամիների առաջ, բայց նրանք մերկացվեցին խորհրդային պանծալի հետախուզության կողմից և վոչնչացվեցին ինչպես կատաղած շներ:

Հարկավոր է միշտ լինել արթուն և հիշել կապիտալիստական շրջապատման մասին: Մեր թշնամիներն այսուհետև ևս կփորձեն թուլացնել մեր սոցիալիստական հայրենիքի հզորությունը, լրտեսներ, դիվերսանտներ, վնասարարներ ուղարկել մեր թիկունքը: Մեր խնդիրն է՝ հարյուրապատիկ ուժեղացնել մեր բոլշևիկյան զգաստությունը, կարողանալ ճանաչել թշնամուն, ինչպես եվ վոր դիմակավորված լինի նա: «Հարկավոր է մեր ամբողջ ժողովուրդը պահել մոբիլիզացիոն պատրաստության վիճակում՝ ռազմական հարձակման վտանգի հանդեպ, վորպեսզի վոչ մի «պատահականություն» և մեր արտաքին թշնամիների վոչ մի տեսակ ֆոկուսներ չկարողանան հանկարծակիի բերել մեզ...» (Ստալին): Մեր պանծալի ներքգործժողկոմատական-

ների հետ միասին, վորոնց գլխավորում է ստալինյան յերկաթակուռ ժողկոմ ընկեր Յեժովը, արմատախիլ անելով նողկալի դավաճանների, ֆաշիզմի արյունարբու շների, տրոցկիստական — բուխարինական ճիվաղների բոլոր բները:

4. Համաշխարհային նոր պատերազմի վերահաս վտանգի պայմաններում ընդարձակվում և ամրապնդվում է ֆաշիզմի ու պատերազմի դեմ պայքարելու ժողովրդական ճակատը: Ամբողջ առաջավոր ու առաջադեմ մարդկությունն Իսպանիայի ու Չինաստանի հերոսական ժողովուրդների կողմն է, վորոնք անձնվիրաբար պայքարում են ֆաշիստական հարձակողների դեմ հանուն իրենց անկախության:

Մայիսի մեկի որերին ԽՍՀՄ-ի բանվոր դասակարգը և բոլոր աշխատավորներն ամրապնդում են իրենց ինտերնացիոնալ կապերը միջազգային պրոլետարիատի հետ, աշխարհի բոլոր ճնշված ժողովուրդների հետ: Այդ կապերի զարգացումն ու ամրապնդումը, միջազգային պրոլետարիատի լուրջ ջանքերի միացումը խորհրդային ժողովրդի էլ ավելի մեծ ջանքերի հետ — անհրաժեշտ պայմանն է ամբողջ աշխարհում



սոցիալիստական հեղափոխության հաղթանակի համար:

5. Վորպես հզոր մի ամրոց վեր է խոյանում Խորհրդային Միությունը կապիտալիստական ծովի մեջ: Մենք միակ յերկիրն ենք աշխարհում, վորը չգիտե ճգնաժամեր, աղքատություն ու գործազրկություն: Ստալինյան Սահմանադրությունը բարձր՝ վեր հանեց խորհրդային քաղաքացու կոչումը, նրա համար ապահովեց աշխատանքի իրավունք, հանգստի իրավունք, կրթության ու ծերության հասակում ապահովման իրավունք և այլն: Ստալինյան Սահմանադրության դրոշի տակ ծաղկում ու հաղթանակում է սոցիալիստական դեմոկրատիզմը, ԽՍՀՄ ժողովուրդների ստալինյան բարեկամությունը:

6. Ստալինյան հնգամյակների հաջող կատարումը, ստախանովյան շարժման զարգացումը բազմապատկում են մեր յերկրի ամբողջ ժողովրդատնտեսության հաղթանակները (մատնանշել ժողովրդա-տնտեսական պլանի կատարումը ըստ մեր արդյունաբերության առանձին ճյուղերի, բերել իրենց ձեռնարկության, շրջանի անման թվերը և այլն): Միայն Խորհրդային Միու-

*թյան մեջ, վորին ղեկավարում է* Լենին-
Ստալինի *մեծ կուսակցությունը, հնարա-
վոր են այնպիսի հաղթանակներ, ինչպես
Հյուսիսային բևեռի նվաճումը, և այնպիսի
հերոսներ, ինչպիսին է պապանինյան քառ-
յակը: Կապիտալիստական աշխարհում ան-
հնարին է այդպիսի հերոսություն, այն-
տեղ չկա դրա համար հող, չկա հիմք:*

7. *Մայիսի մեկը դիմավորենք սոցիալիս-
տական շինարարության բոլոր ճակատամա-
սերում ձեռք բերված նոր հաղթանակնե-
րով: Ե՛լ ավելի լայնորեն ու խորը կերպով
ծավալենք ստախանովյան շարժումը: Ա-
ռանց ձեռքներս ծալելու պայքարենք մեր
հայրենիքի հզորության հետագա ծաղկման
համար, կոմունիզմի նորանոր հաղթանակ-
ների համար:*

*Ե՛լ ավելի ամուր ու ե՛լ ավելի ուժեղ կեր-
պով համախմբենք մեր շարքերը* Լենին-
Ստալինի *հարազատ կուսակցության շուր-
ջը:*



# ՊԱՏՄԱԿԱՆ ՏԵՂԵԿԱՆՔ ՄԱՅԻՍԻ 1-Ի ՄԱՍԻՆ

*Մայիսմեկյան տոնը պրոլետարիատի
հեղափոխական ուժերի մարտական ինտեր-
նացիոնալ ստուգատեսն է: Այդ օրն ունի
իր պանծալի հեղափոխական պատմու-
թյունը:*

1889 *թ. հուլիսին Փարիզում, Երկ-
րորդ Ինտերնացիոնալի առաջին կոնգրե-
սում մի բանաձև ընդունվեց, վոր ամեն
տարի մայիսի* 1*-ի օրն անցկացվի միջազ-
գային բանվորական ցույց, պահանջելով
ութժամյա աշխատանքային օր: Բանաձև-
վում ասված է. «Նշանակվում է մեծ մի-
ջազգային ցույց՝ մի անգամ ընդմիշտ սահ-
մանված ամսաթվին, այնպես վոր միանգա-
մից բոլոր յերկրներում ու բոլոր քաղաք-
ներում, սահմանված միևնույն օրը, աշխա-
տավորները հասարակական իշխանություն-*

ների՛ն պահանջներ ներկայացնեն՝ ուենքով սահմանափակել աշխատանքային օրը մինչև 8-ը ժամով, ինչպես և կատարել Փարիզի միջազգային կոնգրեսի մյուս բոլոր վորոշումները...

Զանազան ազգերի աշխատավորներն այդ ցույցը կազմակերպում են այնպես՝ ինչպես կթելադրեն իրենց յերկրի պայմանները...»:

Բուրժուազիան շատ շուտ գնահատեց միջազգային պրոլետարական այդ ակտի հեղափոխական նշանակությունը: Արդեն 1890 թվականին Վիեննայի փողոցներում ցուցարարների դեմ կանգնեցրին վոստիկանության ու զորքերի զինված ջոկատներ: Բյալա քաղաքում (Ավստրիական Սիլեզիա) վոստիկանությունը կրակեց ցուցարարների վրա: Կային շատ վիրավորներ ու սպանվածներ:

Ցուցարարների դեմ զինված ուժեր հանեցին Մադրիդում, Բեռլինում, Փարիզում, Հռոմում, Վիեննայում: Սակայն այդ ամբողջ նախապատրաստությունը չվիժեցրեց մայիսի 1-ի տոնակատարումը: Այդ որն իրոք միջազգային պրոլետարական համերաշխության օր էր:

1891 թվականի մայիսի 1-ը նույնպես



նշվեց արյունահեղ ընդհարումներով բանվորների և բուրժուազիայի վարձկան ջոկատների միջև: Ֆրանսիայում կար 19 սպանված, Իտալիայում՝ 5: Զոհեր կային նաև այլ յերկրներում: Մայիսմեկյան դրոշները ներկվել եյին բանվորական արյունով:

Այդ ժամանակից ի վեր, մայիսմեկյան տոների որերին, բուրժուազիան մոբիլիզացիայի յե յենթարկում իր ամբողջ ռազմական – վոստիկանական պետական մեքենան, ընդդեմ բանվոր դասակարգի և նրա հեղափոխական կազմակերպությունների:

Յերկրորդ Ինտերնացիոնալը, վորը բուրժուազիայի հետ համաձայնության ուղին եր բռնել, հենց սկզբից աշխատում եր վոչնչացնել մայիսմեկյան ցույցերի հեղափոխական բովանդակությունը:

Յերկրորդ Ինտերնացիոնալի յերկրորդ կոնգրեսում՝ 1891 թվականին ընդունվեց առաջին, կոնգրեսի վորոշումը թուլացնող մի բանաձև՝

«Մայիսի մեկը հանդիսանում է բոլոր յերկրների բանվորների ընդհանուր տոնը և այդ որը բանվորները ցուցադրում են իրենց պահանջների և համերաշխության ընդհանրությունը: Այդ տոնին պետք է ուղեկ-

ցի աշխատանքի դադարեցումը, ինչ չափով որ տվյալ յերկրի պայմանները անհնարին չեն դարձնում այդ»:

Հետագայում Յերկրորդ Ինտերնացիոնալի օպորտունիստները փորձում եյին հեղափոխական պայքարի օրը՝ մայիսի 1-ը դարձնել ամեն տարվա զվարճացուցիչ ծես և զբոսանքներ: Գերմանիայում սոցիալ-դեմոկրատիան մայիսի 1-ը փոխադրում եր առաջիկա կիրակի օրվան և նրան տալիս եր հասարակ ժողովրդական զբոսանքի բնույթ՝ նվագածությամբ: Մի քանի այլ յերկրներում օպորտունիստներն աշխատում եյին մայիսի 1-ը նշել աշխատանքը վերջանալուց հետո:

Չնայած Յերկրորդ Ինտերնացիոնալի օպորտունիստական գծին, պրոլետարիատն ամեն տարի մայիսի 1-ի օրն ավելի ու ավելի լայն եր տարածում միջազգային պրոլետարական համերաշխության գաղափարը: Մայիսմեկյան ցույցերը դառնում են պրոլետարիատի մարտական յելույթներ՝ ուղղված տիրապետող դասակարգի՝ կապիտալիստների դեմ:

Ռուսաստանում մայիսի 1-ն առաջին անգամ նշվեց 1890 թվականին Վարշավայում



տեղի ունեցած գործադուլով: Այդ գործադուլին մասնակցում եր մոտ 10 հազար հոգի:

1891 թվականին կազմակերպվեց առաջին մայովկան Պետերբուրգում:

Մոսկվայում առաջին մայովկան անցկացվեց 1895 թվականին: Նրան մասնակցում եր 250 հոգի:

1896 թվականին Պետերբուրգում հրատարակվեց մայիսմեկյան թռուցիկ, վորը գրել եր Լենինը բանտում: Նրանում ասված ե՝

«Ժամանակն ե, վոր մենք ել՝ ռուս բանվորներս, պատռենք այն շղթան, վորով կաշկապել են մեզ կապիտալիստներն ու կառավարությունը, վորպեսզի ճնշման տակ պահեն. Ժամանակն ե, վոր մենք ել միանանք մեր յեղբայրների՝ այլ պետությունների բանվորների պայքարին, կանգնենք նրանց հետ այն ընդհանուր դրոշի տակ, վորի վրա գրված ե՝ «Բանվորնե՛ր բոլոր յերկրների, միացե՛ք»:

Մայիսի 1-ի օրվա նկատմամբ չափազանց ցայտուն կերպով դրսևորվեց այն ամբողջ ներհակությունը, վոր գոյություն ուներ Յերկրորդ Ինտերնացիոնալի օպորտունիս-

տական գծի և ԼԵՆԻՆԻ ստեղծած ու ղեկավարած բոլշևիզմի հեղափոխական գծի միջև:

Ռուսաստանում մայիսի 1-ը, վոր տոնվում եր բոլշևիկների ղեկավարությամբ, միշտ հեղափոխական բնույթ եր կրում:

Մայիսմեկյան որերին տեղի եյին ունենում մասսայական ընդհարումներ բանվորների ու վոստիկանության, ժանդարմերիայի և մայիսի 1-ի որը մոբիլիզացիայի յենթարկված զինված ուժի միջև: Բուրժուազիան անողոքաբար դատաստան եր տեսնում ցուցարարների հետ: Կատարվում եյին մասսայական ձերբակալություններ: Սովորական յերևույթ դարձած գործադուլները մայիսի 1-ին սկսում եյին աստիճանաբար վերածվել մասսայական – քաղաքական յելույթների:

1901 թվականին մայիսմեկյան ցույցերն ավելի վիթխարի չափ են ընդունում: Պետերբուրգում և Թիֆլիսում տեղի ունեցան առանձնապես խոշոր իրադարձություններ:

Պետերբուրգում գործադուլ եյին արել Պուտիլովի, Օբուխովի, Նևայի և այլ գործարանների բանվորները: Օբուխովի գործա



րանում մայիսի 1-ի տոնակատարումը վերջացավ բարիկադային կռվով: Այդ որը Թիֆլիսում անցկացվեց մասսայական մարտական յելույթ: Բանվորները կրում եյին կարմիր դրոշներ, Մարքսի ու Ենգելսի պատկերները: Կազմակերպիչն եր՝ ընկեր ՍՏԱԼԻՆԸ: Ցույցից հետո ընկեր ՍՏԱԼԻՆԸ ձերբակալվեց և ապա հարկադրված յեղավ անցնելու մշտական անլեգալ վիճակի:

Ռուսաստանում տարեց – տարի ավելանում եր մայիսի 1-ը տոնող քաղաքների թիվը: 1902 թվականին մայիսի 1-ը տոնվեց 36 քաղաքում, 1903 թվականին՝ 63, 1904 թվականին՝ 126 քաղաքներում ու գյուղաքաղաքներում: Մասսաների հեղափոխական շարժումն աճում է, չնայած այն դաժան դատաստանին ու ջարդերին, վորոնք կազմակերպում եր ցարական կառավարությունը: 1905 թվականին մայիսի 1-ի տոնակատարումը Ռուսաստանում անցավ ծավալվող հեղափոխության պայմաններում, զինված ապստամբության նախապատրաստվելու նշանաբանով:

1905 թվականին Ռուսաստանում մայիսմեկյան ցույցին մասնակցում եյին հարյուր հազարավոր բանվորներ ու աշխատավոր-

ներ, ընդ վորում մայիսի 1-ն առաջին անգամ տոնվեց շատ գյուղերում:

Վիթխարի դասակարգային մարտերում, ԼԵՆԻՆԻ ղեկավարած բոլշևիկյան կուսակցությունը կարողացավ գլխավորել մասսաների հեղափոխական պայքարը և համախմբում եր նրանց իր լոզունգների շուրջը: Բոլշևիկյան կուսակցությունը հանդիսացավ հասունացող հեղափոխության միակ կազմակերպիչն ու ղեկավարը վոչ միայն Ռուսաստանում, այլև Արևմուտքում:

Անդրկովկասում ընկեր ՍՏԱԼԻՆՆ եր 1905 թվականի մայիսմեկյան յելույթների կազմակերպիչը, յելույթներ, վորոնց ակտիվ մասնակցում եյին նաև գյուղացիական մասսաները (82 հազար գյուղացի Վրաստանում): Ընկեր ՍՏԱԼԻՆԸ ղեկավարում եր Կովկասյան Միության կոմիտեն, վորը հսկայական դեր խաղաց բոլշևիկյան կենտրոնի ստեղծման գործում:

1905 թվականի հեղափոխությունը Ռուսաստանում ուժգին խթանում ե հեղափոխական շարժման զարգացումն այլ յերկրներում և վորոշում ե արևմտա – յեվրոպական պրոլետարիատի 1905–1906 թ. թ. մա-



յիսմեկյան յելույթների մարտական բնույթը:

Ռեակցիայի տարիներին, չնայած տեռորի կատաղի խրախճանքին, Ռուսաստանում տեղի եյին ունենում մայիսմեկյան գործադուլներ ու ցույցեր: Պետերբուրգում 1907 թվականին գործադուլ ե անում մոտ հարյուր հազար բանվոր և չի աշխատում 236 ֆաբրիկա ու գործարան:

Մոսկվայում տեղի յե ունենում համարյա ընդհանուր գործադուլ:

Բանվորական շարժման նոր վերելքը 1911–1912 թվականներին անդրադարձավ նաև մայիսմեկյան յելույթների վրա:

1912 թվականի մայիսմեկյան ցույցերի նախապատրաստումն ու կազմակերպումը ղեկավարում եր ընկեր ՍՏԱԼԻՆԸ, վորը շրջում եր Ռուսաստանի կարևորագույն շրջանները մայիսի 1-ի նախորյակին, վորպես Կենտկոմի անդամ: 1912 թվականի մայովկան պրոլետարիատի պատասխանն եր բանվորների գնդակահարմանը Լենայի վոսկեհանքերում:

Բոլշևիկյան «Զվեզդա» թերթն իր ոգոստոսի 21-ի (8-ի) համարի առաջին եջում,

այդ շրջանակի մեջ զետեղեց հետևյալ հաղորդագրությունը.

| «Լենայի վոսկեհանքերում սպանվեց 270, վիրավորվեց 250» |
| --- |

Ընկեր ՍՏԱԼԻՆԸ «Զվեզդա» թերթի ապրիլի 28-ի (15-ի) համարում զետեղած իր «Նոր շրջան» հոդվածում գրել եր.

«Պիտերում և Մոսկվայում, Ռիգայում և Կիևում, Սարատովում և Եկատերինոսլավում, Օդեսայում և Խարկովում, Բաքվում և Նիկոլաևում, — ամենուրեք, Ռուսաստանի բոլոր ծայրերում դուրս են բարձրացնում բանվորները՝ ի պաշտպանություն Լենայում զոհված իրենց ընկերների:

«Մենք կենդանի յենք, յեռում ե մեր ալ արյունը՝ չմսխված ուժերի կրակով»:
1913 թվականին Ռուսաստանում գործադուլ եր արել ավելի քան 800 հազար բանվոր:

ԼԵՆԻՆԸ գրել եր.

«Ընթացիկ տարվա մայիսյան ամբողջ աշխարհին ցույց տվեց, վոր Ռուսական պրոլետարիատը հաստատապես առաջ ե գնում իր հեղափոխական ճանապարհով,



առանց վորի փրկություն չկա խեղդվող և կենդանի նեխվող Ռուսաստանի համար»:

1914–1918 թվականների իմպերիալիստական պատերազմն առանձնապես ակնառու կերպով պարզեց Յերկրորդ Ինտերնացիոնալի դավաճանական, հակահեղափոխական եյությունը: Յերկրորդ Ինտերնացիոնալի առաջնորդները բացե ի բաց անցան բուրժուազիայի կողմը: Նրանք վերացրին մայիսի 1-ի տոնակատարումը, վորոշում կայացնելով, թե նկատի ունենալով պատերազմը՝ «մայիսի 1-ին վոչ մի ցույց չպետք ե տեղի ունենա»: Նրանք իրենց դրոշը դարձրին պատերազմող պետությունների իմպերիալիստական դրոշակներ:

Միայն ԼԵՆԻՆԻ ղեկավարած բոլշևիզմն եր, վոր համաշխարհային պատերազմի տարիներին ել մնում եր մասսաների հետ և նրանց գլուխն անցած, հաստատապես առաջ եր տանում նրանց հեղափոխական ճանապարհով՝ չնայած բոլոր դժվարություններին: Ռուսաստանում իմպերիալիստական պատերազմի տարիներին, պրոլետարական մայովկաները տեղի եյին ունենում բոլշևիկյան լոզունգներով՝ «Պատերազմ-պա-

տերազմին», «Վերածենք իմպերիալիստական պատերազմը քաղաքացիական պատերազմի»:

Մյուս երկրների հեղափոխականներն ընդունեցին բոլշևիկյան լոզունգները, և չնայած ոպորտունիստական արգելման, Բեռլինի բանվորները 1916 թվականի մայիսի 1-ի օրը հանդես են գալիս ցույցով ընդդեմ պատերազմի, ընդդեմ իմպերիալիզմի:

Հոկտեմբերյան մեծ հեղափոխությունը, վորը դրեց համաշխարհային պրոլետարական հեղափոխության սկիզբը, մեծ բարձրության հասցրեց միջազգային պրոլետարական համերաշխության հեղափոխական գաղափարը: Միջազգային պրոլետարիատի հեղափոխական դրոշն է դառնում Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Հեղափոխության և Կոմունիստական Ինտերնացիոնալի դրոշը:

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Հեղափոխությունը նոր եջ բացեց համաշխարհային պատմության մեջ:

1918 թվականի մայիսի 1-ը Ռուսաստանի պրոլետարիատն առաջին անգամ տոնում եր վորպես տիրապետող դասակարգ:

Հայաստանում առաջին անգամ մայիսմեկյան տոնակատարությունը տոնվեց 1899 թ.



Երևանում: Այդ տոնակատարությունը կազմակերպեց Երևանի Թեմական դպրոցի և արական գիմնազիայի բարձր խմբերի աշակերտությունը՝ միացած Երևանի Շուստովի («Արարատ»-ի) զավոդի և մի խումբ այլ բանվորների հետ:

Մայիսի 1-ին, համաձայն նախապես յեղած պայմանի, տոնին մասնակցողները միացան իրար հետ Կոնդի ձորում: 1899 թ. մայիսի 1-ին Զանգվի ձորում տոնվեց մայիսի մեկը. որվա առթիվ տեղի ունեցավ զրույց և հավաքվածներին բացատրվեց մայիսմեկյան նշանակությունը, վորից հետո վոստիկանության հսկողությունից խուսափելու համար մասնակիցները ցրվեցին խաղաղ կերպով իրենց տեղերը:

Ավելի կազմակերպված և ավելի հաջող նախապատրաստվեց 1904 թ. մայիսմեկյան տոնակատարությունը Լենինականում (Ալեքսանդրապոլում): Մինչ այդ Ռ. Ս. Դ. Բ. Կ. Կովկասյան միությունն ընկ. ՍՏԱԼԻՆԻ գլխավորությամբ ռուսերեն, վրացերեն և հայերեն լեզուներով հրատարակել եր բրոշյուրներ ու թռուցիկներ, վորոնք բացատրում եյին մայիսմեկյան տոնի նշանակությունը և այն մարտականորեն կազ-

մակերպելու անհրաժեշտությունը: Դեռ ապրիլին տեղական սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունը ծրագրում է տալ մայիսմեկյան տոնին մասսայական բնույթ: Այդ պատճառով ծրագրվում է կազմակերպել տնային, ճաշարանների, հյուրանոցների ծառայող-բանվորների գործադուլ, վորի համար և ընտրվում է 11 հոգուց բաղկացած գործադուլային բյուրո, վորը խաղեյիններին ներկայացնելու համար մշակում է հետևյալ պահանջները.—սահմանափակել աշխատանքի ժամերը, ավելացնել ռոճիկները, հաստատել գիշերային հերթափոխություն, հատկացնել բնակարան, ձրի բժշկական օգնություն և այլն: Չնայած պահանջների այս համեստությանը, տնատերերն այն մերժում են: Գործադուլային կոմիտեն վորոշում է հայտարարել գործադուլ: Ապրիլի 30-ը հայտարարվում է գործադուլի օր: Զիթողցյանների գարաժը, վորտեղ այժմ բարձրացել է Լենինականի Տեքստիլ գործարանը, նշանակվեց գործադուլավորների հավաքի վայր: Առավոտյանը վաղ հավաքվեցին տնային, ճաշարաններ, հյուրանոցների բանվորներն ու ծառայողները, վորոնց միացան նաև Զի-



թողցյանների գործարանի բանվորները: Գործադուլի վայրը յեկան նաև յերկաթուղայիններից և քաղաքացիներից մարդիկ, վորոնց թիվը հասավ մոտավորապես 1000—1200 հոգու: Իրարանցման մեջ ընկավ ամբողջ քաղաքը: Գործի կանչվեց վոստիկանությունը և նրա հավատարիմ դաշնակցական տղերքը—դաշնակցական տեղական կոմիտեյի անդամները: Յերբ բանվորները բաց արին միտինգը և դեռ չեր վերջացել առաջին ճառը, վրա հասան վոստիկանները և դաշնակցական խմբապետները: Սկսվեց ծեծ, տուր ու դմփոց, դանակամարտ և այլն: Բանվորները տեղի ավին: Ցույցը վերջացավ, դաշնակցականները գովասանական գնահատական ստացան տեղական պրիստավից:

Հետագա մայիսմեկյան տոնակատարությունը տեղի յե ունենում Գորիսում 1905 թ.:

1906 թ. մայիսի 1-ը տոնվեց և՛ Յերևանում, և՛ Լենինականում: Ճիշտ է, շատ տարիներ յերևանցիք տոնել եյին մայիսի 1-ը վորպես գարնանային առաջին օր, սակայն այս տարվա տոնը սովորական օրի նման

չեր։ Առաջին տարին էր, վոր մայիսի 1-ը Երևանում տոնվում էր վորպես միջազգային պրոլետարիատի մեծ տոն։

Դեռ ապրիլի 29-ին Ռ. Ս. Դ. Բ. Կ. տեղական կազմակերպությունը կարմիր թերթիկների վրա յերեք լեզուներով հրավեր կարդաց ընկեր-բանվորներին տոնել մայիսի 1-ը։ Ապրիլի 30-ին նույն կազմակերպությունը բաց թողեց ևլի մի թռուցիկ, վորի մեջ բացատրում էր այդ օրվա նշանակությունը։

Ռ.Ս.Դ.Բ.Կ. կոչին արձագանքեցին Սարաջևի և Շուստովի կոնյակի գործարանի բանվորները (հայ, վրացի, ռուս). «Լույս» տպարանի բանվորները, կաշու գործարանների բանվորները (դաբաղները) և մի քանի ուրիշ մանր արհեստանոցների բանվորներ։ Վաղ առավոտից քաղաքի զանազան մասերում կախվեցին կարմիր դրոշակներ՝ մակագրված յերեք լեզուներով, սակայն դեռ մի քանի որ առաջ լուր էր տարածված, թե մայիսի 1-ին ցույց պիտի լինի, այդ պատճառով քաղաքի զանազան մասերում զորք էր կենտրոնացված, և զորքերի կուտակման պատճառով ցույց կամ միտինգ տեղի չունեցավ։



Ավելի ծանր պայմաններում էր գտնվում Լենինականը (Ալեքսանդրապոլը), դեռ տոնից մի շաբաթ առաջ ավելի յեր խստացվել զինվորական դրությունը. քաղաքի փողոցներում վխտում եյին հեծելակ և հետևակ զորամասեր — դրագուններ։ Սակայն տոնակատարության կազմակերպումը տեղի ունեցավ աշակերտության միջոցով. Մայիսի մեկին՝ յերկուշաբթի որը տեղական դպրոցների բոլոր աշակերտները չգնացին դասի և խնդրեցին ուսուցիչներին, վոր միասին դուրս գան դաշտ, մայիսի մեկը տոնելու համար։ Ուսուցիչներից վոմանք ընդառաջեցին աշակերտների խնդրին և խմբով գնացին քաղաքից դուրս. յերկար չտևեց այդ տոնակատարությունը, շուտով վրա հասան ստրաժնիկները, վորոնք գավառապետի կողմից առաջարկեցին անմիջապես ցրվել և վերադառնալ իրենց տները, հակառակ դեպքում, վորպես զինվորական դրության խախտողներ և վորպես ցուցարարներ՝ կբանտարկվեն և կաքսորվեն։

Այդ կապակցությամբ էլ արգելվեցին ամբողջ քաղաքում նույնիսկ 4—5 հոգուց բաղկացած խմբավորումները։

Ավելի կազմակերպված յեղավ 1907 թվի

մայիսմեկյան տոնը, վորը նույնպես կազմակերպվեց Լենինականում: Գործակատարների միության նախաձեռնությամբ ապրիլի 2-րդ կեսին գումարվեց աչքի ընկնող արհեստանոցների, գործարանների, պա-րանների բանվորների ու ծառայողների ժողով, վորը պիտի մշակեր մայիսի 1-ի տոնակատարության ծրագիրը: Կազմակերպչական այդ ժողովը վորոշեց տոնել մայիսի 1-ը և աշխատանքի դուրս չգալ: Հակառակ ժողովի գաղտնի բնույթին, վոստիկանությունն իմացավ բանվորության վորոշումը և ձեռք առավ տոնը խանգարելու կտրուկ միջոցներ:

Ապրիլի 27-ին պատերին փակցվեց գավառապետի հրամանը, վորով խստիվ արգելվում եր տոնակատարությունը և աքսորով սպառնում նրանց, ովքեր կբացակայեյին աշխատանքից:

Դրությունն ավելի սրվեց, յերբ գավառապետն առաջարկեց բոլոր գործարանատերերին ու արհեստանոցների տերերին՝ կառավարությանը ներկայացնելու մայիսի 1-ին աշխատանքի չեկող բոլոր բանվորների ու գործակատարների ցուցակները: Ապրիլի 27-ին տեղի ունեցավ կազմակերպչական



2-րդ արտակարգ ժողովը: Ժողովում գործակատարներն առաջարկեցին հրաժարվել տոնից, իսկ բանվորներն ընդհակառակը՝ պնդում եյին տոնակատարության անհրաժեշտության վրա: Մայիսի 1-ին վաղ առավոտից քաղաքի զանազան փողոցներում ու արհեստանոցների մոտերքում դրված եյին բանվոր հսկիչներ, վորոնք պիտի հսկեյին տոնակատարության ընթացքի վրա: Վորոշված տեղում (Ջիթողցոնց դա-բաղում) հավաքվեցին մեծ թվով բանվորներ, կարմիր նշաններով և նույնիսկ՝ կարմիր բլուզներով: Հավաքվածների մեջ տարածվեցին Ռ.Ս.Դ.Բ. կուսակցության հրատարակած թռուցիկները: Սրանց լոզունգը վերաբերում է 8 ժամվա բանվորական օրվան: Ժամի 11-ին բացվեց միտինգը: Առաջինը հանդես յեկավ Ռ.Ս.Դ.Բ.Կ-ի ներկայացուցիչը, վորը խոսեց մայիսի 1-ի համաշխարհային բանվորական օր լինելու նշանակության, Ռուսաստանի հեղափոխության և բանվոր դասակարգի անխուսափելի հաղթությունների մասին: Ճառախոսների ասածներն ընդհատվում եյին բուռն ծափահարություններով և ուռաներով — ծածանում եր նաև կարմիր դրոշա-

կը: «Մարսելյոզ» յերգելով փակվեց միտինգը: Ոստիկանությունը չհաջողվեց հայտնաբերել միտինգի տեղն ու ցրել այն, սակայն նրա ձեռքն ընկած՝ աշխատանքից բացակայողների ցուցակներով սկսվեցին խուզարկություններ ու բանտարկություններ:

1917 թ. Փետրվարյան հեղափոխությունից հետո Հայաստանի զանազան վայրերում՝ Յերևանում, Լենինականում, Կիրովականում տեղի ունեցան մայիսմեկյան տոնակատարություններ:

1920 թ. մայիսմեկյան ցույցերը վերածվեցին զինված կոմունիստական ապստամբությունների Հայաստանի մի շարք քաղաքներում և շրջաններում (Լենինական, Ղարս, Սարիղամիշ, Ն. Բայազետ և այլն):

Խորհրդային յերկրում մայիսի 1-ը տոնվում է բանվորական մասսաների և բոլոր աշխատավորների մոբիլիզացիայի նշանաբանի տակ հանուն բանվոր դասակարգի դիկտատուրայի հետագա ամրացման, սոցիալիստական շինարարության նոր հաղթանակների:

Սոցիալիզմի հաղթանակը մեր յերկրում



ապահովեց աշխարհի միակ պրոլետարական դիկտատուրայի տնտեսական ու քաղաքական ամրացումը, բարձրացրեց Խորհրդային Միության հզորությունն ու միջազգային նշանակությունը հանուն ժողովուրդների խաղաղության՝ նոր իմպերիալիստական պատերազմների վտանգի աճման և Խորհրդային Միության դեմ հակահեղափոխական պատերազմի նախապատրաստման պայմաններում:

Խորհրդային Միությունը — միջազգային պրոլետարիատի աշխարհի միակ հայրենիքը — իր պայքարում հանուն ժողովուրդների խաղաղության հենվում է կապիտալիստական յերկրների լայն աշխատավորական մասսաների սրտաբուխ համակրանքի և պաշտպանության վրա, մեր հզոր ու անպարտելի Կարմիր Բանակի անխորտակելի ուժի վրա, մեր մեծ հայրենիքի բանվորների և գյուղացիների ուժի, նվիրվածության վրա, ԽՍՀՄ-ի ժողովուրդների անխորտակելի միասնության վրա:

Մայիսի 1-ի օրը կապիտալի յերկրների պրոլետարիատն ու աշխատավորությունը դասակարգային պայքարի հետագա սրման պայմաններում, ժողովրդական մասսաների

աննկարագրելի աղքատացման, առանձին երկրներում բուրժուական դեմոկրատիայի վերջին մնացորդների վրա հարձակվելու և ֆաշիստական տեռորի խրախճանքի պայմաններում կցուցադրեն իրենց պատրաստակամությունը՝ միասնական ճակատի հիման վրա պայքարելու արյունոտ ֆաշիզմի դեմ, նոր իմպերիալիստական պատերազմի դեմ, կպայքարեն կոմունիզմի դրոշի տակ հանուն միջազգային պրոլետարական հեղափոխության, հանուն կոմունիզմի ամբողջ աշխարհում:



## ԿԱՐԵՎՈՐ ՈՒՂՂՈՒՄ

«Ագիտատորի Բլոկնոտ»-ի № 8-ում զետեղված՝ Հայկական ԽՍՀ-ի շրջանային բաժանումը ցույց տվող սխեմայում «Կրասնոսելսկի շրջանը» ցույց է տրված 2 անգամ, մեկ վորպես «Կրասնոսելսկի», մեկ վորպես «Կարմիրի շրջան»: Կրասնոսելսկին և Կարմիրը միևնույն շրջանն է: Այս սխալը առաջացել է սխեման գծագրողի անփութության հետևանքով, վորին նկատողություն է տրված:

ՀԿ(բ) Կ ԿԿ հրատարակչություն—«Խորհրդ. Հայաստան»

ԲԱՑՎԱԾ Է 1938 Թ.
բաժանորդագրությունը

# „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ“

Լույս է տեսնում ամիսը 2 անգամ
Հ Կ (բ) Կ Կենտկոմի կուսպրոպագանդայի
և ագիտացիայի բաժնի հրատարակություն

ԲԱԺՆԵԳԻՆԸ՝

| | | |
|---|---|---|
| 12 ամիսը | . . | 6 ռուբ. |
| 6 » | . | 3 » |
| 3 » | . | 1 ռ. 50 կ. |

Առանձին համարը՝ 25 կոպ.

Բաժանորդագրվելու համար դիմել՝
«Սոյուզպեչատ»-ի քաղաքային, շրջանային
բյուրոներին և փոստի բաժանմունքներին: